# ՀԱՅԱՍՏԱՆԻ ԲՈԼՇԵՎԻԿՆԵՐԻ 15-ՐԴ ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ

Մարտի խառնից մինչև խառներկուսը Երևանում տեղի ունեցավ Հայաստանի կոմունիստական (բոլշևիկների) պարտիայի 15-րդ համագումարը: Մեր ռեսպուբլիկայի բոլոր աշխատավորների համար դա քաղաքական մեծ իրադարձություն էր:

Համագումարը ցույց տվեց, որ մեր ռեսպուբլիկայի աշխատավորները Հայաստանի բոլշևիկների պարտիայի ղեկավարությամբ, կատարելով ժողովուրդների սիրելի առաջնորդ Ստալինի ցուցումները, կոմունիզմի կառուցման գործում ձեռք են բերել մեծ նվաճումներ: Եվ դա այն ժամանակ, երբ կապիտալիստական երկրներում օրեց-օր վատանում է աշխատավորների վիճակը, երբ նրանք սիպված են կրել ծանր զրկանքներ: Պատերազմի պատրաստվող իմպերիալիստները կրճատում են բանվորների աշխատավարձը, զրկում նրանց քաղաքական իրավունքներից, իսկ գյուղացիների վրա դնում են նոր, ավելի ծանր հարկեր, քայքայում նրանց տնտեսությունը: Բոլորովին այլ է դրությունը մեզ մոտ:

Բոլշևիկների պանծալի պարտիան ժողովուրդների հանճարեղ առաջնորդ Ստալինի գլխավորությամբ անդուլ պայքար է տանում, որպեսզի մեր երկրի աշխատավոր մարդիկ ապրեն ուրախ ու երջանիկ, լիության մեջ: Պարտիայի հոգատարության շնորհիվ պատերազմի տարիներից անմիջապես հետո մեզ մոտ նորից սահմանվեց սննդամթերքի և արդյունաբերական ապրանքների առատություն, վերականգնվեց մեր խաղաղ, ստեղծագործական աշխատանքով հագեցած կյանքը:

Բայց Լենինի—Ստալինի փառապանծ պարտիան երբեք չի կարող բավարարվել ձեռք բերված նվաճումներով: Մենք կառուցում ենք կոմունիզմ: Դրա համար էլ պարտիան ժողովրդին ոգեշնչում է, կազմակերպում նրա ուժերը, բացում տալիս նրա ստեղծագործական մտքին ու աշխատանքին, առաջնորդում նրան դեպի ավելի խոր պայծառ ու լուսավոր ապագա: Կոմունիստական պարտիան մեր ժողովրդի առաջնորդն է, նրա հաղթանակների կազմակերպիչը:

ՀԿ(բ)Պ Կենտկոմի քարտուղար ընկ. Գր. Հարությունյանի զեկուցումը 15-րդ համագումարում հրաշալի մի փաստաթուղթ է, որի մեջ արտացոլվել են հայ ժողովրդի հաղթանակները տնտեսության, գիտության և կուլտուրայի ասպարեզներում: Նրա զեկուցումն ընդգրկում է միայն վերջին երկու-երեք տարվա ժամանակաշրջանը: Բայց ի՜նչպիսի վիթխարի տեղաշարժեր են եղել մեր ռեսպուբլիկայում: Բարձրացել է կոլխոզային դաշտերի բերքատվությունը, ավելացել է անասունների գլխաքանակն ու մթերատվությունը: Արդյունաբերության բնագավառում չտեսնված չափերով բարձրացել է արտադրանքի քանակն ու որակը: Ռեսպուբլիկայի տարբեր քաղաքներում ու գյուղական վայրերում գործարկվել են բազմաթիվ գործարաններ, էլեկտրակայաններ: Շահագործման են հանձնվել նորակառույց դպրոցներ, բնակելի շենքեր: Մեզ մոտ այնքան դպրոցական շենքեր են կառուցվել, որ մոտ ապագայում բոլորովին կվերանա երեք հերթի ուսումը դպրոցներում:

Արդյունաբերության ու գյուղատնտեսության հետ միասին բարգավաճել է նաև ռեսպուբլիկայի գիտությունն ու կուլտուրան: Մեր գիտնականները հայրենական գիտությունը հարստացրել են մի շարք արժեքավոր հայտնագործություններով: Կոլխոզային գյուղացիության, բանվորների, ինտելիգենցիայի միահամուռ աշխատանքի շնորհիվ ավելացել է ժողովրդական ընդհանուր եկամուտի քանակը, ստեղծվել են ժողովրդական նոր հարստությունների անսպառ աղբյուրներ: Դրա հետ միասին մեքենայացման միջոցով թեթևացել է մարդկանց աշխատանքը: Կարելի է բերել մի փաստ միայն, որն ինքնին շատ բան է ասում: Այժմ ռեսպուբլիկայի ցանքատարածության 99 տոկոսը մշակում են մեքենաները՝ տրակտորները, կոմբայնները և այլն: Բայց մի՞թե հնարավոր է թվել բոլոր այն նվաճումները, որոնց մասին համագումարում այնպես մանրամասն խոսել են Հայաստանի բոլշևիկների մարտական ղեկավար ընկ. Գր. Հարությունյանը և համագումարի դելեգատները:

ՀԿ(բ)Պ 15-րդ համագումարը նշեց այն ուղիները, որոնցով ընթանալով, մեր ժողովուրդը ձեռք կբերի նոր, փայլուն հաղթանակներ:

Մարտի 23—24-ին տեղի ունեցավ նորընտիր Կենտկոմի պլենումը, որը Հայաստանի Կ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեի առաջին քարտուղար ընտրեց ընկ. Գր. Ա. Հարությունյանին, երկրորդ քարտուղար՝ ընկ. Հ. Վ. Պողոսովին: Հայաստանի Կ(բ)Պ Կենտկոմի քարտուղարներ ընտրվեցին ընկ. ընկ. Զ. Տ. Գրիգորյանը, Բ. Ա. Գրիգորյանը և Ա. Ն. Քոչինյանը:




*Լենինի—Ստալինի գործի պայքարին եղի՛ր պատրաստ*

№ 4

ԱՊՐԻԼ

1951 Թ. ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 23-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ԵՎ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԻ ՀԱՄԱՐ

Վլադիմիր Իլյիչ Լենինը երեխաների հետ զբոսնում է Գորկայում: *Նկար՝ Վ. Կոնովալովի*

# ԼԵՆԻՆՆ ԱՊՐՈՒՄ Է

Լենինն ապրում է ամեն մի գործում,
Մեր սրտի մեջ է, մեզ հետ է, նա կա.
Որպես լենինյան մտքի մարմնացում
Մեր գիգանտների շարքերն են վկա:
Ծով բարիքներով գյուղերն են լցվել,
Առատությունն է դաշտերից հորդում,
Կոմունիզմի լույս դռներն են բացվել.
Խնդության երգն է ամեն մի սրտում:

Ավանդները մեծ՝ անմահ Լենինի
Մենք կատարում ենք անսահման սիրով,
Եվ մեր հարազատ երկիրն հայրենի
Լցնում լենինյան անմար լույսերով:
Մենք՝ խաղաղության դրոշը պարզած
Կերտում ենք կյանքը, կառուցում անվերջ,
Մեր անմահ գործի ճամփան է միշտ բաց,
Լենինն է այսօր Ստալինը մեծ:

ՀԵՆՐԻԿ ԹՈՒՄԱՆՅԱՆ



# ԴՊՐՈՑԱԿԱՆ ՏԱՐԻՆԵՐԸ

*(Ա. Ի. Ուլյանովայի հիշողություններից)*

*Այն ընտանիքը, որտեղ ծնվեց և մեծացավ Վլադիմիր Իլյիչ Լենինը, շատ համերաշխ էր։*

*Վոլոդյան կարդալ սովորեց մորից, երբ մոտ հինգ տարեկան էր։ Ե՛վ նա, և՛ նրա հետ միասին սովորող քույրը՝ Օլյան ընթերցանությունը շատ սիրեցին և հաճույքով կարդում էին մանկական գրքեր և ամսագրեր։ Երբ Վոլոդյան կարդալուց հոգնում էր, քրոջ հետ վազում էր խաղալու։ Եվ պետք է ասել, որ ավելի շատ աղմկոտ, շարժուն խաղեր էր սիրում։*

*Ձմեռը Վոլոդյան սահնակ էր քշում այն բլրից, որ սարքում էին մեր բակում, և ձնագնդի էր խաղում ընկերների հետ. իսկ ավելի ուշ չմուշկներով վազել սկսեց։*

*Հիշում եմ, թե ինչպես Վոլոդյան և ավագ եղբայրը՝ Սաշան չմուշկներով սահում էին ընդհանուր սառցադաշտի բարձր բլուրներից, որտեղից նույնիսկ սահնակներով սարսափելի էր սղղալ։*

*Սկզբում նրանք վերևում՝ սարի ամենադիք մասում, երերտակվում էին, ապա աստիճանաբար ուղղվում և երկար ժամանակ սահում էին ամբողջ հասակով կանգնած։ Ես միայն նախանձով նայում էի նրանց, բայց ընդօրինակել չէի համարձակվում։*



*Վոլոդյան գիմնազիա ընդունվեց ինն ու կես տարեկան հասակում։ Սովորում էր հեշտ ու հաճույքով։ Նա լավ ընդունակությունների տեր էր։ Հայրս էլ նրան, ինչպես նաև ավագ եղբորս ու քրոջս, նստումակության էր սովորեցրել, տրված առաջադրանքի ճշգրիտ և ուշադիր կատարման վարժեցրել։*

*Հիշում եմ նաև, որ ուսուցիչներն ասում էին, թե դասերի բացատրությունը միշտ ուշադիր լսելը դասարանում Վոլոդյային շատ է օգնում։ Հրաշալի ընդունակություններ ունենալով, նա նոր դասը սովորաբար հիշողության մեջ էր պահում և տանը միայն կրկնում էր։*

*Դրա համար էլ շատ անգամ, երբ երեկոյան մենք՝ ավագներս ճաշարանի մեծ սեղանին դասավորում էինք մեր գրքերը ընդհանուր լամպի շուրջը, պարզվում էր, որ Վոլոդյան դասերն արդեն գիտի։*

*Երբ հայրս տանն էր լինում, ստուգում էր նրա դասերը։ Վոլոդյան սովորաբար ամեն ինչ իմանում էր։ Այն ժամանակ հայրիկն սկսում էր հարցնել ամբողջ տետրում եղած լատիներեն հին բառերը. բայց Վոլո-*



Մարիա Ալեքսանդրովնա Ուլյանովա՝
Վլադիմիր Իլյիչ Լենինի մայրը։

դյան պատասխանում էր առանց կանգ առնելու։

Իր և իրեն շրջապատող ամեն ինչի նկատմամբ նա վերին աստիճանի գիտակցաբար ու խիստ էր վերաբերվում և դեռ վաղ հասակից իր մեջ զարգացրեց աշխատասիրություն, որը երիտասարդ ժամանակ, համալսարանն ավարտելու տարիներին, արդեն բնավորության աչքի ընկնող գիծը դարձավ։ Մենք հիանում էինք նրա բնավորության այդ գծով, երբ նա մեծ էր արդեն։

Ես Վոլոդյայի մեջ, դեռ մանկության տարիներին, նկատում էի շրջապատին ընդհանրապես քննադատաբար վերաբերվելու ընդունակություն։ Նա ուրիշների բնավորության մեջ լավ գծեր էր նկատում անպայման այն միտումով, որ ստուգեր իրեն, թե ինքը ճի՞շտ է վարվում, ուրիշի վարմունքի մեջ չկա՞ այնպիսի մի բան, որ կարող էր ընդօրինակել։

Վոլոդյային խորթ էին պարծենկոտությունն ու գոռոզությունը, որոնք նա տանել չէր կարողանում ավելի ուշ տարիներին, և որոնց նկատմամբ զգուշացնում էր երիտասարդությանը կոմերիտմիության 3-րդ համագումարում արտասանած իր ճառում։

Սովորաբար, երբ Վոլոդյան գիմնազիայից վերադառնում էր տուն, հորը պատմում էր դասերի ժամանակ կատարված դեպքերի մասին, պատմում էր նաև, թե ինչ են հարցրել իրեն և թե ինքն ինչպես է պատասխանել։ Հաջող պատասխաններն ու լավ գնահատականները կրկնվում էին ամեն օր։ Այդ պատճառով էլ Վոլոդյան երբեմն հոր առանձնասենյակի մոտով արագ անցնելիս շուտասելուկի նման զեկուցում էր՝ «հունարեն՝ հինգ, գերմաներեն՝ հինգ»։

Այնքա՜ն պարզ է այդ պատկերն իմ աչքերի առջև...

Ես նույնպես գտնվում եմ հայրիկի առանձնասենյակում և որսում եմ գոհունակության այն ժպիտը, որ փոխանակում են հայրս ու մայրս։ Նրանք աչքերով հետևում են գիմնազիայի համազգեստ հագած այդ թիկնավետ տղային, որի հրաշեկ մազերը դուրս են պրծել գլխարկի տակից և որը առույգ քայլով անցնում է դռան մոտով։ Առարկաներն, իհարկե, փոխվում էին։ Երբեմն լսվում էր՝ «լատիներեն՝ հինգ, հանրահաշիվ՝ հինգ», բայց էությունը նույնն էր. միշտ էլ ստացվում էր մի գնահատական՝ հինգ։



Իլյա Նիկոլայևիչ Ուլյանով—
Վ. Ի. Լենինի հայրը։

Հայրս այդ տարիներին մայրիկին ասում էր, թե Վոլոդյային ամեն ինչ հեշտ է հաջողվում և ինքը վախենում է, որ նրա մեջ աշխատասիրություն չի ստեղծվի։ Մենք այժմ գիտենք, որ այդ վախն ավելորդ էր, որ Վոլոդյան կարողացավ արտակարգ աշխատասիրություն դաստիարակել իր մեջ։

Գիմնազիայում Վոլոդյան հետաքրքրվում էր լատիներենով, կլասիկների գրքերով, պատմությամբ, աշխարհագրությամբ, սիրում էր շարադրություններ գրել և շատ լավ էլ գրում էր։

Շարադրություններ գրելիս նա դասագրքերով ու ուսուցչի պատմածով չէր բավարարվում. գրադարանից գրքեր էր վերցնում և դրա համար էլ նրա գրածները շատ հանգամանորեն էին ստացվում. թեման շատ լավ մշակված էր լինում ու գրվածքը լավ գրական լեզվով շարադրված։

Վոլոդյայի հարաբերությունները դասարանում լավ էին։ Նա հաճախ իր ընկերնե-

րին բացատրում էր անհասկանալին, ուղղում էր թարգմանությունների ու շարադրությունները, իսկ երբեմն դժվարացողներին օգնում էր գրել։ Նա ինձ պատմում էր, թե իր համար հետաքրքիր է ընկերոջն օգնել այնպես,



Վ. Ի. Ուլյանով-Լենինը 1887 թ. գիմնազիան ավարտելուց հետո։

որ ընկերը և՛ լավ գնահատական ստանա, և՛ միևնույն ժամանակ աշխատանքը գիտակցված ու ինքնուրույն լինի։ Անհասկանալի տեղերը նա ընկերներին բացատրում էր դասամիջոցներին կամ, ինչպես և եղբայրը՝ Սաշան, գիմնազիա էր գալիս կես ժամ առաջ, որպեսզի նրանց համար թարգմանի հունարենի կամ լատիներենի դժվար տեղերը, բացատրի բարդ թեորեման։

1886 թվականին, երբ Վլադիմիր Իլյիչը տասնվեց տարեկան էր, մեր երջանիկ ընտանիքին հասավ առաջին ծանր հարվածը. հունվարի 12-ին հանկարծամահ եղավ հայրս՝ Իլյա Նիկոլայևիչը։ Սաշան այդ ժամանակ Պետերբուրգում էր, և Վոլոդյան տան ավագ որդին մնաց։ Չնայած իր երիտասարդ հասակին, նա մոր նկատմամբ մեծ ուշադրություն հանդես բերեց, շատ ջանք գործադրեց օգնելու նրան նոր հոգսերի հործանքի մեջ։

Այդ ձմռանը ես ավելի երկար մնացի Սիմբիրսկում, որովհետև ձմեռային արձակուրդների ժամանակ էր, որ վրա հասավ հայրիկի մահը։ Ես դասընթացների համար լատիներեն պետք է անցնեի և Վոլոդյան, որ այդ լեզուն հիանալի գիտեր, հանձն առավ ինձ օգնել։ Հիշում եմ, թե ինչքա՜ն լավ էր նա բացատրում և ինչքա՜ն կենդանի ու հետաքրքիր էին ստացվում մեր դասերը։ Այն ժամանակ նա ասում էր, որ գիմնազիայի դասընթացը չափազանց երկար է և որ մեծահասակ գիտակից մարդը, ութ տարվա անցնելիքը երկու տարում կարող է սովորել։

Եվ այս բանը նա ապացուցեց նրանով, որ ուսուցիչ Օխոտնիկովին երկու տարում էքստերն քննության պատրաստեց։

Այդ ուսուցիչը չուվաշ էր և չուվաշական դպրոցում էր դաս տալիս։ Նա մաթեմատիկայից շատ ընդունակ էր. բայց համալսարան ընդունվելու համար հարկավոր էր գիմնազիայի դասընթացի բոլոր առարկաներից քննություն տալ։

Իհարկե, ռուսերեն վատ իմացող չուվաշի համար դա հեշտ բան չէր, մանավանդ, որ նրա ընդունակությունները լեզուների և հասարակական գիտությունների մեջ բոլորովին էլ փայլուն չէին։

Այդ ժամանակ Վոլոդյան վերջին դասարաններում էր։ Չնայած դրան, նա, որին մեր ընտանիքին մոտիկ ծանոթ, չուվաշական դպրոցի տեսուչ Յակովլևն առաջարկեց պարապել Օխոտնիկովի հետ և քննության պատրաստել նրան, հանձն առավ և մեկ ու կես-երկու տարում իր աշակերտին պատրաստեց էքստերնի համար։

Օխոտնիկովը Վոլոդյայի հետ միևնույն տարում տվեց գիմնազիայի վերջնական քննությունները և համալսարան ընդունվեց։

1887 թվականին, երբ Վոլոդյան վերջին դասարանում էր, մեր ընտանիքին երկրորդ դժբախտությունը պատահեց։ Ալեքսանդր III ցարի մահափորձին մասնակցելու համար Պետերբուրգում ձերբակալվեց Ալեքսանդր Իլյիչը։ Վլադիմիր Իլյիչն առաջինը լսեց այդ ծանր լուրը և ստիպված եղավ մորը նախապատրաստել դրան։

Եվ ահա, թե ինչպես պատահեց այդ։

«Նամակն ստանալով,—պատմում է Կաշկադամովան,—ես մպրդ ուղարկեցի գիմնազիա, որ Վոլոդյային կանչեն և նամակը տվի

նրան կարդալու։ Նրա հոնքերը կիտվեցին։ Նա երկար ժամանակ լռեց։ Իմ առջև այլևս առաջվա ուրախ տղան չէր, այլ հասակավոր մի մարդ։ «Բայց գործը լուրջ է, Սաշայի համար կարող է վատ վերջանալ»,—ասաց նա»։

Եվ իսկապես Ալեքսանդր Իլյիչի գործը վատ վերջացավ։ Նա մահափորձի գլխավոր ղեկավարներից մեկը ճանաչվեց, դատապարտվեց և 1887 թվականի մայիսի 8-ին մահապատժի ենթարկվեց։

Սիմբիրսկի գիմնազիայի վարչությանը նկատողություն արեցին, որ այդպիսի «սոսկալի հանցագործին» բաց է թողել լավագույն ավարտականով և ոսկե մեդալով։ Շատերը կարծում էին, թե ոսկե մեդալ չեն տա նրա եղբորը՝ Վլադիմիր Իլյիչին. բայց վերջինիս առաջադիմությունը գիմնազիայի ութ տարիների ընթացքում այնքա՜ն աչքի էր ընկնում, ավարտական քննությունների ժամանակ նրա տված պատասխաններն այնքա՜ն փայլուն էին, որ նրան ոսկե մեդալից զրկելը հնարավոր չէր։

Նա ստացավ այդ ոսկե մեդալը և ընդունվեց Կազանի համալսարանի իրավաբանական ֆակուլտետը։

Այն ճնշումը, որ անցյալ դարի ութսունական թվականներին առանց այն էլ ծանրացած էր ուսանողության վրա, 1887 թվականի մարտի 1-ի մահափորձից հետո ավելի ուժեղացավ, որովհետև այդ գործի մասնակիցներն ուսանողներ էին։ Ուսանողների «տեսուչներ» նշանակվեցին իսկական ոստիկանական խուզարկուները, փակվեցին ուսանողական ամենաանմեղ ընկերությունները, արձակվեցին բոլոր կազմակերպությունները։ Շատ ուսանողներ ձերբակալվեցին ու հեռացվեցին։ Բոլոր համալսարանների ուսանողներն սկսեցին բողոքել։ Ուսանողական գործադուլներ տեղի ունեցան նաև Կազանի համալսարանում։

Վլադիմիր Իլյիչն էլ մասնակցեց այդպիսի մի գործադուլի և մյուսների թվում հեռացվեց համալսարանից ու Կազանից արտաքսվեց Կոկուշկինո գյուղը։

Այդ հեռացումով վերջացան նրա ուսման տարիները։ Բարձրագույն դպրոցի դռները փակվեցին նրա առաջ։ Մերժվեց նրան նորից համալսարան ընդունելու միջնորդությունը։

Այսպիսով Վլադիմիր Իլյիչի դպրոցական կյանքը վերջացավ, երբ նա տասնյոթ տարեկան էր։ Բայց նա այնքան համառ էր, որ ինքնուրույն կերպով, առանց որևէ կողմնակի օգնության, կարողացավ ավարտել նաև բարձրագույն կրթությունը։

Նա վերջացրեց ուսումը, և վերջապես նրան իրավունք տրվեց իրավաբանական ֆակուլտետի ավարտական քննությունը հանձնել իր շրջանավարտների հետ նույն տարին, այնպես որ, կարծես համալսարանից չէր էլ հեռացվել։

Համալսարանն ավարտելու դիպլոմը նրան մասնագիտություն էր տալիս, ուրեմն և հաց վաստակելու հնարավորություն, որի մասին պետք էր մտածել, որովհետև ամբողջ ընտանիքը միայն մորս թոշակով էր ապրում։

Կյանքի այդ տարիներին, սկզբում Կազանում, ապա Սամարայում, Վլադիմիր Իլյիչը կազմակերպվեց և դարձավ քաջարի, համոզված ռևոլյուցիոներ, որը ոչ մի դժվարությունից չէր վախենում, որը հետո իր ամբողջ կյանքը, բոլոր ուժերը տվեց աշխատավորների գործի պայքարին։




Սիմբիրսկի գիմնազիան, որտեղ սովորել է Վ. Ի. Լենինը. աջ կողմը՝ այդ շենքի պատին փակցրած հուշատախտակը։

# Գերազանցիկը

ՀՌԻՓՍԻՄԵ ՊՈՂՈՍՅԱՆ

Նկ. Գր. ԽԱՆՋՅԱՆԻ

Իր լայն ճակատը բաց, ահա կանգնած է նա՝
Փոքրիկ մի աշակերտ, ժպիտը աչքերում.
Գրատախտակի վրա գրում է նա վստահ,
Թվաբանական մի բարդ խնդիր է նա լուծում:

Հետո արագ քայլով իր տեղն է նա դառնում,
Իսկ ուսուցիչը մեղմ ժպտում է հիացած,
Նշանակում է «հինգ», կապույտ ծոցատետրում,
Փոքրիկ աշակերտի ազգանունի դիմաց:

Ու երբ տղան բացած լեզվի մի դասագիրք,
Հնչուն ռուսաց լեզվով նոր դասն է ընթերցում,
Իր ոսկեհեր սանին նշանակում է «հինգ»,
Նորից ուսուցիչն այն կապույտ ծոցատետրում:



Շատ տարիներ թռան... Կրկին կանգնած էր նա,
Իր լայն ճակատը բաց, ժողովրդի դիմաց,
Հնչուն ռուսաց լեզվով խոսում էր նա վստահ,
Բարդ խնդիրներ լուծում՝ կյանքում դեռ չլուծված:

Հասակ էր նա առել, դարձել էր առաջնորդ,
Այն ժիր փոքրիկ տղան՝ ժպիտը աչքերում.
Բերել էր նա մարդկանց պայծառ մի առավոտ,
Մարդկանց համար գծել լայն ուղիներ կյանքում:




Լենինն էր այն խոսում... Ու վեհ առաջնորդին,
Բոլորի հետ մեկտեղ մի մարդ էր ունկնդրում՝
Ծերուկ մի ուսուցիչ, որ իր նախկին սանին
Նշանակում էր «հինգ» սրտի լույս մատյանում:

# ԼԵՆԻՆԻ ԹԱՆԳԱՐԱՆՈՒՄ

Հ. ՂԱԶԱՐՅԱՆ

Նկ. ԳՐ. ԽԱՆՋՅԱՆԻ

Ձերժինսկու անվան դպրոցի աշակերտ Աշոտիկ Սիրունյանը ամառը մորաքրոջ հետ գնաց Մոսկվա։ Նրանք եղան Կարմիր հրապարակում, այցելեցին Լենինի դամբարանը, իսկ այդտեղից գնացին Լենինի թանգարանը։

Նրանք մոտեցան մի կարմրագույն հոյակապ շենքի։ Նրա քանդակազարդ շքամուտքերի երկու կողմերում փակցված էին մարմարե տախտակներ, որոնց վրա ոսկեզօծ տառերով գրված էր. «Վլադիմիր Իլյիչ Լենինի կենտրոնական թանգարան»։ Թանգարանի սյունազարդ նախասրահում բազմաթիվ այցելուներ կային։

— Ի՛նչքան մարդ կա այստեղ, մորաքույր,— զարմացած ասաց Աշոտիկը։

— Ուրիշ օրեր ավելի շատ են լինում։ Մոսկվա եկող ամեն մի մարդ իր պարտքն է համարում այցի գալ այստեղ։

Աշոտիկն ու մորաքույր Սաթենիկը միացան էքսկուրսանտների մեծ խմբին և մարմարե աստիճանների ուղեգորգերով վեր բարձրացան։ Նրա աչքերի առաջ մի նոր աշխարհ բացվեց։ Թանգարանի աշխատակցուհին, միջահասակ ու համակրելի դիմագծերով մի կին, փայտե մի ձող ձեռքին բացատրում էր այցելուներին ցուցադրված իրերի ու փաստաթղթերի բովանդակությունը։

— Սա, Վլադիմիր Իլյիչի գովասանական թերթիկն է, որը նա գիմնազիայից ստացել է 1884 թվականին։ Սա էլ այն ոսկե մեդալն է, որին նա արժանացել է լավ սովորելու համար։

Աշոտիկը մտածում էր՝ մի՞թե Լենին պապին էլ իր նման փոքրիկ աշակերտ է եղել... Նա երկար ժամանակ չէր կարողանում աչքը հեռացնել այդ նվիրական առարկաներից։

Մի այլ դահլիճում գտնվում էին Լենինի անձնական իրերը։ Պահարաններից մեկում կախված էր թավշապատ օձիքով մի սև վերարկու։ Թանգարանի աշխատակցուհին ասաց.

— Սա Վլադիմիր Իլյիչի վերարկուն է։ 1918 թվին ժողովրդի թշնամիները մեծ Լենինի կյանքի դեմ մահափորձ կատարեցին և ծանր վիրավորեցին նրան։ Ահա այս կարմիր թելերը ցույց են տալիս գնդակի տեղը։

Դահլիճները լիքն էին նկարներով ու փաստաթղթերով։ Ահա այդ նկարներից մեկը։

Երեկո է։ Մի փոքր սենյակում, հասարակ գրասեղանի մոտ նստած են հինգ հոգի։ Նրանց դեմքերն անսահման վճռականություն են արտահայտում։ Լենինը, աջ ձեռքը երեսին հենած,





ուշադրությամբ լսում է երիտասարդ Ստալինին։ Սենյակի մի կողմում դըրված է մի հասարակ աթոռ, որի վրա մի գրաֆինկա ջուր և մի բաժակ կա։ Թանգարանի աշխատակցուհին բացատրում է.

— Այս նկարում պատկերված է Ֆինլանդիայի Տամերֆորս քաղաքում գումարված բոլշևիկների պատմական կոնֆերանսը, որտեղ 1905 թվի դեկտեմբերին առաջին անգամ իրար հանդիպեցին մեծ առաջնորդներ Լենինը և Ստալինը։ Մինչ այդ նրանք իրար հետ կապ էին պահպանում նամակների և ընկերների միջոցով...

Թանգարանի մյուս դահլիճներում խնամքով դասավորված էին բազմաթիվ այլ նկարներ, գրքեր և այլ իրեր։

Շատ հետաքրքիր էր Լենինի աշխատանքային առանձնասենյակը, որը տեղավորված է թանգարանի դահլիճներից մեկում։ Այդտեղ ամեն մի առարկա, ամեն մի փոքրիկ իր մարդու վրա անջնջելի տպավորություն է թողնում։ Ահա այն գրասեղանը, որի վրա աշխատել է Լենինը, ահա նրա թանաքամանը, գրքերի պահարանը՝ բազմաթիվ գրքերով լեցուն, օրացույցը, բազկաթոռները։ Այստեղ ամեն բան պահպանված է այնպես, ինչպես եղել է ավելի քան երկու և կես տասնամյակ առաջ։ Ամեն բան գտնվում է իր տեղում։ Թվում է, թե մեծ առաջնորդը ինչ որ գործով դուրս է եկել և հիմա ուր որ է պիտի վերադառնա...

Սակայն մեկ-երկու ժամվա ընթացքում չէր կարելի շրջել այդ մեծ թանգարանի բոլոր դահլիճները, տեսնել բոլոր էքսպոնատները։

Դահլիճներում պահարանների մեջ խնամքով դասավորված էին շատ շքեղակազմ ու մեծահատոր գրքեր՝ ռուսաց և օտար լեզուներով։

— Վլադիմիր Իլյիչն անչափ շատ էր կարդում. Նա կարդում էր ցերեկ ու գիշեր։ Նա իր հանճարեղ աշխատությունները գրելուց առաջ ուսումնասիրում էր շատ գրքեր և գիտականորեն հիմնավորում էր իր մեծ ուսմունքը, որը մեր ժառանգությունն է,—ասաց բացատրողը։ Իսկ վերջում նա այցելուներին առաջնորդեց մի այլ դահլիճ։

— Այստեղ դուք մի դոկումենտալ կինոնկար կտեսնեք Լենինի մասին։

Քիչ հետո դահլիճը մթնեց և Աշոտիկը մյուս էքսկուրսանտների հետ էկրանի վրա տեսավ մեծ Լենինին։




*Բ. ՍԵՅՐԱՆՅԱՆ* — *Նկ. Վ. ԹԵՎԱՆՅԱՆԻ*

## 1.

*Նրանք գործարան եկան արհեստագործական ուսումնարանից։ Երկուսն էլ ավարտել էին գերազանց գնահատականներով։*

*Հասակակիցներ էին, կարճլիկ տղաներ, Սամեղը՝ Թուխ, Արտոն՝ շիկահեր։ Երբ կանգնեցին դազգահի առջև՝ բոյները չհասավ դազգահին։ Ցեխի պետը կարգադրեց արկղուսներ շարել նրանց ոտքերի տակ։ Այդպես էլ արեցին։ Երկու շարքը հազիվ բավարարեց։ Արտոն ու Սամեղն աշխատանքի անցան այդ արկղուսների վրա կանգնած։*

*Աչքաբաց տղաներ էին, շուտ վարժվեցին և այնքան լավ կատարեցին գործը, որ ցեխի պետը հիացած մնաց։*

*— Ապրեք, տղանե՛ր,—ասաց նա,—երևում է՝ լավ եք սովորել։*

*Երկուսով աշխատում էին միևնույն դազգահի վրա, մեկը՝ ցերեկը, մյուսը՝ կեսօրից հետո։*

*Սկզբում շատ տխրեցին։ Չէին ուզում իրարից բաժանվել։ Դե ո՞նց բաժանվեին. մտերիմ ընկերներ էին, սիրում էին իրար։ Միասին ուսումնարան էին ընդունվել, միասին սովորել, միևնույն հանրակացարանում ապրել, միասին ավարտել ու գործարան եկել։ Լավ կլիներ, որ միևնույն հերթափոխությանն էլ աշխատեին։ Ափսոս, չհաջողվեց. ցեխի մյուս բոլոր դազգահները զբաղված էին։ Ի՞նչ կարող էին անել։*

*Ապրում էին բանվորական հանրակացարանի միևնույն սենյակում, բայց քիչ էին հանդիպում իրար։ Մի շաբաթ մեկն էր վաղ առավոտյան գործի գնում, մի շաբաթ՝ մյուսը։ Արտոն աշխատանքն ավարտելուց հետո դազգահը մաքուր վիճակում հանձնում էր Սամեղին։ Սա էլ գործից հետո մաքրում էր, որպեսզի հետևյալ առավոտ ընկերը մաքուր դազգահի առաջ կանգնի։*

*Ցեխում բոլորն էլ սիրում էին նրանց։ Երկուսն էլ կարգապահ էին։ Երբեք չէին ուշանում, կամ բացակայում գործից։ Պարտաճանաչ էին։ Համարյա ամեն տոնի առթիվ գործարանի վարչությունը պարգևատրում էր նրանց և այդ պարգևատրման ցուցակներում անգամ նրանց ազգանունները միշտ կողք-կողքի էին լինում։*

*Այսպես անցավ աշխատանքի առաջին տարին։ Այդ մեկ տարվա ընթացքում նրանք այնքան մեծացան, որ ցեխի պետը հրամայեց՝ վերցնել արկղուսների վերին շարքը։ Մնաց մի շարքը։*

## 2.

*Մայիսյան տոների առթիվ գործարանում սոցմրցություն ծավալվեց։ Ամեն անգամվա պես Արտոն ու Սամեղը ևս պիտի մասնակցեին այդ մրցությանը։ Խորհուրդ արեցին, թե ո՞ւմ հետ մրցեն։*

*— Էլ ո՞ւր եք հեռու գնում,—ասաց ցեխի պետը,—հենց իրար հետ էլ մրցեք։*

*Ճիշտ որ. ինչո՞ւ չմրցել։ Նույն դազգահի վրա աշխատում են, տեքստիլ մեքենայի միևնույն դետալները պատրաստում։ Իսկույն պայմանագիր կնքեցին։ Այդ պայմանագիրը հրապարակվեց ցեխային պատի թերթում։*

*— Դե՛, ձեզ տեսնեմ, տղե՛րք,—ոգևորեց վարպետը, որը ճերմակած մի մարդ էր։*

Արտոյի ու Սամեդի մրցումը հետաքրքրություն առաջացրեց ցեխում։ «Տեսնես ո՞վ կհաղթի», մտածում էին բանվորները։ Բոլորն էլ գիտեին, որ նրանք անչափ սիրում են իրար, որ նրանցից ոչ մեկը չէր կամենա ընկերոջից ետ մնալ։ Եվ հետո՝ դժվար կլիներ մեկ մեկու հաղթել, որովհետև հավասար ուժի, հավասար ընդունակության տեր տղաներ էին։

Մրցությունն սկսվեց։ Հենց առաջին օրն Արտոն իր պլանը կատարեց 108 տոկոսով։ Դա նորություն էր նրա համար։ Մինչև այդ նա հազիվ էր լրացնում 103-ը։ Հերթափոխությունից հետո ցեխի բանվորները գործարանի դարբասի մոտ Սամեդին ասացին.

— Դե, հիմա քո շնորհքը տեսնենք։

Սամեդը ժպտաց ու քայլերն ուղղեց դեպի ցեխը։

3.

Այդ գիշեր Արտոն ուշ քնեց։ Սպասում էր ընկերոջը։ Նա նստել էր հանրակացարանի բաց լուսամուտի մոտ ու նայում էր դեպի դուրս։ Լսվեց սուլիչի ձայնը։ Արտոն ուրախացավ։ Աշխատանքն ավարտվել էր։ Հիմա կգար Սամեդը։ Արտոն ուզում էր շուտ իմանալ ընկերոջ աշխատանքի արդյունքի մասին։ Նա չէր կամենում, որ ընկերը ետ մնա իրենից, բայց միաժամանակ վախենում էր այնքան առաջ անցած լինի, որ ինքը չկարողանա հասնել նրան։

Սամեդն ուշանում էր։ Ինչո՞ւ էր ուշանում։ Երևի ետ է մնացել, դիտմամբ ուշանում է, որ Արտոն քնի, կամ այնքան շատ դետալներ է պատրաստել, որ հաշվում են, հաշվում ու չեն պրծնում։

Վերջապես երևացին երկրորդ հերթափոխության բանվորները։ Սամեդը դեռ չկար։ Ֆրեզերագործ Միսակն Արտոյին տեսնելով ժպտաց։

— Արտո՛,— դիմեց նա,— դեռ չե՞ս քնել... Աչքդ լույս՝ 115...

— Ճի՞շտ,— ուրախացավ Արտոն։

— Ազնիվ խոսք։ Մի տեսնեիր, թե ոնց է աշխատում. կրակ է կտրել, կրակ,— ավելացրեց Միսակն ու գնաց իր սենյակը։

Արտոն այլևս չսպասեց ընկերոջը։ Նա գոհ սրտով հանեց շորերն ու մտավ անկողին։

Հետևյալ օրը Արտոն ավելի լարեց իր ուժերը։ Նա պլանը կատարեց 120 տոկոսով, իսկ երկրորդ հերթափոխության ժամանակ Սամեդը 130 տոկոսի հասավ։ Դա արդեն զարմացրեց բոլորին։

— Կեցցե՛ս, տղաս,— բացականչեց վարպետը։— Հիմա Արտոն թամքած ձի էլ նստի, քեզ չի հասնի...

Բայց նրա սպասածին հակառակ, Արտոն ոչ միայն հասավ, այլև անցավ ընկերոջից։

Մրցությունն օրն-օրի ավելի էր բորբոքվում։ Երկու ընկերն էլ ձգտում էին գերազանցել իրար։ Մրցության մեջ նրանք ոչ մի հոգնածություն չէին զգում։ Ընդհակառակը՝ աշխատանքը դառնում էր ավելի թեթև, ավելի հաճելի։ Սուլիչի ձայնը լսելով, նրանք դժվարությամբ էին պոկվում դազգահից։

4.

Մայիսյան տոներին ընդամենը հինգ օր էր մնում, երբ Արտոն հիվանդացավ։ Մրսել էր։ Առավոտից ջերմություն ուներ, բայց ցույց չէր տալիս, որ հիվանդ է։

— Կանցնի՛,— հանգստացրեց ինքն իրեն ու գործի գնաց։

Առաջին մեկ-երկու ժամին նա ոչինչ չզգաց։ Աշխատում էր սովորականի պես։ Հետո գլուխն սկսեց պտտվել։ Նա չէր կարողանում ճիշտ ուղղություն տալ դազգահի կտրիչին, հմտությամբ հանել, կամ ամրացնել մշակվող դետալները։

Բայց չէր էլ ուզում, որ հարևանները նկատեն իր հետ կատարվող փոփոխությունը։ Գլուխը կախ շարունակեց գործը։

Աշխատանքից հետո տուն գնաց ու անկողին մտավ։

Սամեդն ուշ վերադարձավ գործից։ Նա ընկերոջը գտավ անկողնի մեջ զառանցելիս։ Մոտեցավ, ձեռքը դրեց նրա ճակատին։ Արտոյի ճակատն այրվում էր։

— Արտո՛,— անհամբեր ձայնեց նա։

Արտոն բացեց աչքերը։

— Ի՞նչ է պատահել. հիվա՞նդ ես...

— Ոչի՜նչ, կանցնի... ջո՜ւր...

Արտոյի շուրթերը ցամաքել էին, աչքերը կարմրել։

Սամեդը ջուր տվեց։

— Ա՛յ տղա, բժիշկ պետք է կանչել։

— Հարկավոր չի...

— Ո՞նց թե,—դժգոհ բացագանչեց Սամեդն ու դուրս եկավ միջանցք։

Ուշ գիշեր էր։ Հանրակացարանում լռություն էր տիրում։

Հանկարծ նրա աչքովն ընկավ դիմացի դուռը։ Այդ սենյակում բնակվում էր ֆրեզերագործ Միսակի ընտանիքը։ Սամեդը զգուշությամբ ծեծեց դուռը։ Ներսից ոչ մի ձայն չլսվեց, քնած էին։ Սամեդն ավելի ուժեղացրեց իր հարվածները։

Ֆրեզերագործն արթնանալով, բացեց դուռը։ Սամեդը պատմեց նրան ընկերոջ մասին։ Ֆրեզերագործն իսկույն արթնացրեց կնոջը։ Սա իմանալուն պես հագնվեց ու շտապեց հիվանդի մոտ։

Արտոն տնքում էր։ Միսակի կինը ջրի ու քացախի խառնուրդով սառը կոմպրես դրեց հիվանդի ճակատին ու սկսեց շփել Արտոյի ձեռքերը, ոտքերը, վիզն ու կուրծքը։

Ֆրեզերագործն ու կինը մնացին այնքան ժամանակ, մինչև հիվանդի ջերմությունն իջավ և նա քնեց խաղաղ քնով։ Միայն նրանց գնալուց հետո Սամեդը պառկեց հանգստանալու։ Այնքան հոգնած էր, որ պառկելն ու քնելը մեկ եղավ։

5.

Բայց որքան մեծ եղավ Սամեդի զարմանքը, երբ հետևյալ առավոտ արթնանալով՝ Արտոյին անկողնում չգտավ։ Կարծեց դուրս եկած կլինի։ Տեղից վեր թռավ, գնաց ջրի ծորակի մոտ՝ չկար, բակում՝ նույնպես։ Ո՞ւր կարող էր գնացած լինել։ Շտապեց գործարան։

Արտոն արդեն աշխատում էր։

— Ա՛յ տղա, այս ի՞նչ ես արել,—վրդովված հարցրեց նա։

Արտոն ժպտաց։ Նա գունատ էր։ Երևում էր, որ հիմա էլ նա իրեն լավ չի զգում։

— Սո՛ւս, ձայն չհանես,—մտերմորեն խնդրեց Արտոն։

— Ախր ինչո՞ւ ես այդպես անում։ Գնա, պառկի՛ր...

— Չէ, ես հիվանդ չեմ,—համառեց Արտոն ու շարունակեց գործը։

Կտրիչը բզզալով հատում էր մետաղը և մանր, ոլորուն տաշեղները ճանճերի պես պտտվում էին Արտոյի գլխի շուրջը, նստում նրա մազերի վրա, ուսերին։

Սամեդն ինչքան խնդրեց, չկարողացավ



ընկերոջը համոզել, որ նա աշխատանքը թողնի ու գնա պառկի։ Բարկացած թողեց ու հեռացավ։

— Սամե՛դ,—նրա ետևից ձայնեց Արտոն։ Սամեդը կանգ առավ։

— Եթե մեկին բան ես ասել, էլ ոչ՝ ես, ոչ՝ դու,—պատվիրեց Արտոն ու շարունակեց գործը։

Կեսօրից հետո, երբ Սամեդն աշխատանքի էր գալիս, ընկերներից իմացավ, որ Արտոն հազիվ է լրացրել օրվա նորման։ Նա սրտի խորքում ցավ զգաց։ Ինչո՞ւ է Արտոն այդպես անում։

Հիվա՞նդ է, թող պառկի, առողջանա։ Ո՞վ է ստիպում։ Գործի մասի՞ն է մտածում՝ Սամեղը կարող է աշխատել և իր փոխարեն, և նրա։ Ուրիշ ի՞նչ է ուզում նա...

Բայց... բայց կհամաձայնի՞ Արտոն։ Դժվար թե, նա շատ հպարտ տղա է։

Ուրեմն պետք է օգնել։ Բայց այնպես օգնել, որ Արտոն ինքը չիմանա։

Այդ վճռով էլ Սամեղը գործի անցավ։ Նա աշխատեց արտակարգ եռանդով։ Պատրաստեց ավելի շատ դետալներ, քան պատրաստում էր ամեն օր։ Նրանց մի մասը հանձնեց պահեստ, մի մասը դարսեց Արտոյի պահարանի մոտ ու կանչեց վարպետին։

— Այս ի՞նչ դետալներ են, վարպե՛տ, ինչո՞ւ են մնացել,—ասաց նա։

— Տես է, մի տես,—ուրախացած բացականչեց վարպետը։—Ես էլ զարմանում եմ, թե ինչո՞ւ է Արտոն ետ մնում։ Երևի մոռացել է,—ու դետալները պահեստ հանձնեց Արտոյի անունով։

Այնուհետև Սամեղն իր պատրաստած դետալների մի մասն ամեն օր մի պատրվակով հանձնում էր Արտոյի անունով։

Արտոն այդ մասին ոչինչ չգիտեր։ Նա շարունակում էր աշխատել։

### 6.

Ամիսն ավարտվեց։

Գործարանի ակումբում հանդիսավոր նիստ էր։ Արտոն ու Սամեղը նստել էին կողք-կողքի։ Զեկուցում էր դիրեկտորը։ Նա խոսեց գործարանի հաջողությունների մասին, հետո անցավ մրցության արդյունքներին։ Այստեղ նա նշեց նաև Արտոյի ու Սամեղի անունները։ Ասաց, որ նրանք երկուսն էլ պատվով են կատարել իրենց խոստումը և, իրար չզիջելով, հասել գերազանց ցուցանիշների։

Արտոն մարմնի մեջ սարսուռ զգաց։ Նա գիտեր, որ մրցության մեջ Սամեղը գերազանցել է իրեն։ Իսկ ինչո՞ւ դիրեկտորն այդպես ասաց։ Երևի շփոթվեց, կամ սխալ տեղեկություններ են տվել նրան։ Արտոն չէր կարողանում հանգիստ նստել։ Նա ուզում էր հարց տալ, պարզել, Սամեղը կանխեց նրան։

— Ի՞նչ ես վեր թռչում, սպասի՛ր։

— Սխալ ո՞նց, է... երևի շփոթել է... Տղերքը գիտեն, որ...

— Տղերքը ոչինչ չգիտեն։ Հաշվի բան չի՞։ Իսկ եթե դու կասկածում ես՝ գնա ստուգիր։

Արտոն լռեց, բայց էլի չկարողացավ հանգստանալ։

Հետևյալ առավոտ նա գնաց պահեստ, ստուգեց իր հանձնած դետալների քանակը։ Հաշիվը ճիշտ դուրս եկավ։ Սիրտը մի քիչ խաղաղվեց. բայց կասկածն էլի չանցավ։ Այդ ինչպե՞ս կարող էր պատահած լինել։ Մտածեց, մտածեց ու նորից եկավ ընկերոջ մոտ։

— Լսիր, Սամե՛ղ, մի բան պիտի հարցնեմ, բայց խոսք տուր, որ ճիշտ կասես։

Սամեղը կարծես հասկացավ ընկերոջ միտքը, ժպտաց.

— Խոստանում եմ, ասա...

— Դու իմ անունով պահեստը դետալներ հանձնե՞լ ես...

Սամեղը ծիծաղեց։

— Ինչո՞ւ ես հարցնում։

— Չէ՛, ճիշտ ասա...

— Հանձնել եմ,—խոստովանեց Սամեղը,—հետո ի՞նչ կա որ...

— Ուրեմն մրցության մեջ դու ես հաղթել...

— Բայց մի՞թե դա է կարևորը,—ընդհատեց Սամեղն ու հանգիստ ձայնով ավելացրեց,—կարևորն այն է, որ երկիրը շատ մեքենա ստանա։ Իսկ թե մրցության մեջ մեզանից ո՞վ կհաղթի, մեզ համար միևնույն է։ Չէ՞ որ մենք ընկերներ ենք՝ կոմերիտականներ...

Սամեղը ճիշտ էր ասում։

# ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ՋՈԿԱՏՆ ՈՒ ՆՐԱ ՋՈԿԱՏԱՎԱՐԸ

Վ. ԲԱՐԱԽԱՆՅԱՆ

Լուսանկ. Վ. ՍԵՎՈՅԱՆԻ



Գր. Հարությունյանի անվան ջոկատի ճավաքույթը՝ «Խաղաղությունը կճաղթի պատերազմին» թեմայով: Խոսում է Մերի Դավթյանը:

Ընկեր Գր. Հարությունյանի անվան պիոներական ջոկատի խորհրդի նախագահ Սիլվա Նազարյանը հենց ուսումնական տարվա սկզբից իր շուրջը համախմբեց ընկերներին և եռանդուն կերպով սկսեց աշխատել: Իր ալբոմում նա գրել էր.

«Լավ և գերազանց սովորելը յուրաքանչյուր պիոների հայրենասիրական պարտքն է»:

Շուտով գործի անցավ և ջոկատավար Ռիմա Նիկողոսյանը:

Յոթերորդ դասարանի պիոներները շատ բան ունեին անելու, բայց նրանք բավարարվեցին մի որոշումով՝ հենց առաջին օրվանից այնպես սովորել, որ միշտ բարձր պահեն ջոկատի պատիվը:

Ջոկատավարին օգնեց դասարանի դաստիարակ Ռոզա Զաքարյանը:

Նրանք հաճախ խորհրդակցում էին ջոկատի աշխատանքների մասին և որոշում առաջիկա անելիքները:

Թե ինչպես աշխատեց ջոկատը, թող պատմեն նրանց գործերը:

## ՋՈԿԱՏԻ ՑՈՒՑԱՀԱՆԴԵՍԸ

Դիտենք ցուցահանդեսը:

Սովորական մեծ ու լուսավոր դասասենյակ: Դիմացի պատի կենտրոնում դրված է մեծ Ստալինի նկարը, որը զարդարված է թարմ ծաղիկներով:

Ահա մի ալբոմ, որը նվիրված է Վ. Ի. Լենինի կյանքին, մյուս ալբոմը՝ Ստալինի ծննդյան 70-ամյակին: Այստեղ ամեն մի նկար փակցված է խնամքով:

Երկու ֆոտոթերթերն իրենց վրա են բևեռում բոլորի ուշադրությունը:

Ընկեր Ստալինի նկարի տակ գրված են այս հուզիչ խոսքերը:

«Դու սրտիս մեջ և պատկերդ
Կախած ունեմ իմ սնարին,
Որպես հորս պատկերը սուրբ,
Որպես ոգի իմ քնարին»:

Ջոկատում և օղակներում պիոներները հաճախ զրույցներ են լսում մեծ առաջնորդների կյանքի և ռևոլյուցիոն գործունեության մասին և ամեն անգամ, երբ պատասխանում են՝ «Լենինի—Ստալինի գործի պայքարին եղի՛ր պատրաստ» դեվիզին, հիշում են անմահ Իլյիչի պատգամը և ընկեր Ստալինի պահանջը՝ սովորել:

Երրորդ ալբոմը պատրաստել է Մարուսյա Առաքելյանը: Նա խնամքով փակցրել է ռուս և հայ գրողների նկարները և նկարների տակ գրել քաղվածքներ նրանց խորհուրդներից:

«Առաջավոր ջոկատ», այսպես է կոչվում ջոկատի թերթը։ Նրա առաջին համարում կարդում ենք։ «Սովորենք 4 և 5 գնահատականներով», «Իմ խոստումը» և այլ նյութեր։

Ջոկատը հրատարակում է նաև միամսյա պատի թերթ, որտեղ ամփոփվում են ուսման արդյունքները։ Այս նախաձեռնությունը օգնում է ուսման որակի բարձրացմանը։ Այստեղ գերազանցիկները գրում են իրենց փորձի մասին, խորհուրդ են տալիս ընկերներին, թե ինչպես կարելի է արդյունավետ պարապել։ Կան նաև ծաղրանկարներ, որոնք զգուշացնում են ետ մնացող պիոներներին։

Դավթյան Մերին ճամբարից բերած իր կոլեկցիաներն է նվիրել դպրոցին, Վարդա-



Խմբագրական կոլեգիան լույս է ընծայում ջոկատի պատի թերթը։
Նկարում՝ (ձախից)—Հասմիկ Հարությունյանը, Լյուբա Նիկողոսյանը և Սվետլանա Ավետիսյանը։

նյան Մարիցան իր աճեցրած ծաղիկները նվիրում է դպրոցին և առաջարկում ընկերներին հետևել իր օրինակին։ Այսպիսի աշխատանքներն ուսանելի հավաքույթի արդյունք են։ Հավաքույթի թեման եղել է՝ «Միչուրինի կյանքը և ուսմունքը»։

Հնարավոր չէ թվել սեփական ձեռքերով կատարված բոլոր աշխատանքները։ Մի բան պարզ է, որ ջոկատի ամեն մի հավաքույթ և աշխատանք մի հիմնական նպատակ ունի՝ ընդլայնել և խորացնել ձեռք բերած գիտելիքները, ամեն կերպ օգնել սիրելի ուսուցիչներին գիտակցական կարգապահության և ուսման որակի բարձրացման գործում։

## ՊԱՏՄՈՒՄ Է ՋՈԿԱՏԻ ԽՈՐՀՐԴԻ ՆԱԽԱԳԱՀԸ

Մեր ջոկատը կոչվում է՝ մտերիմների ջոկատ։ Դա շատ բանով օգնեց մեզ վերացնելու «2» գնահատականները։ Երբ մենք որոշեցինք ջոկատն անվանակոչել ընկ. Գր. Հարությունյանի անունով, խոսք տվինք՝ պայքարել 4 և 5 գնահատականի համար։

Դասարանում վերացան բացակայությունները և ուշացումները, լավ կազմակերպվեց ընկերական օգնությունը։ Երբ մեկը մեզանից «երկուս» էր ստանում, նրա հարցով զբաղվում էր ջոկատի խորհուրդը և օգնություն կազմակերպում։

Երբ մեկը հիվանդության պատճառով դպրոց չէր գալիս, մենք տանը նրան բացատրում էինք անցած դասերը։ Եվ այսպես մեր խոստումը կատարեցինք։

Այժմ մեր ջոկատում 8 գերազանցիկ

կա՝ Մերի Դավթյանը Լյուսյա Ուստաբաշյանը, Քնարիկ Պողոսյանը, Սիլվա Նազարյանը և մյուսները։ 8 պիոներ ուսման հարվածային են, իսկ դասարանի կեսից ավելին 3 գնահատական չունի։ Մնացածներն էլ երկուս չունեն։ Առաջադիմությանը շատ է օգնում գրքեր կարդալը։

Ջոկատում կազմակերպել ենք շրջիկ գրադարան, որպեսզի մի գրքից օգտվեն բոլորը։ Անցյալ տարի Լիդան, Լուսիկը, Լյուբան և ուրիշները կարդացել են 15—20 գիրք։ Երբ ընկերներով հավաքվում ենք կամ օղակի հավաքույթ անում, պատմում ենք կարդացած գրքերի բովանդակությունը։

Մեր ջոկատը հետաքրքիր էքսկուրսիաներ է կազմակերպել։ Եղել ենք Կարմիր բլուրում, դիտել ենք Հաղթանակի կամուրջը և ուսումնասիրել թանգարաններն ու մի շարք գործարաններ։



Սեդա Պապոյանը, Սվետլանա Ավետիսյանը, Լուսիկ Ուստաբաշյանը և Հասմիկ Հարությունյանը պատրաստվում են տարեվերջի քննություններին։

Հայրենի երկրի ուսումնասիրությունն այս տարի ևս հիմնական տեղ է գրավում աշխատանքներում։

Ջոկատի խորհրդի որոշմամբ մեր առաջիկա հավաքույթը նվիրված է լինելու կոմունիզմի մեծ կառուցումներին։ Այդ մասին մեզ պատմելու են՝ Քնարիկը, Լյուսյան, Լյուբան, Մերին և Սիլվան։

Մենք նամակագրական կապ ունենք եղբայրական Վրաստանի, Ադրբեջանի և ժողովրդական դեմոկրատիայի երկրների ջոկատների հետ։ Հաճախ զրույցներ ենք լսում մեր մեծ Հայրենիքի նվաճումների և միջազգային դրության մասին։

Մենք գիտենք, որ շատ երեխաներ Ամերիկայում զրկված են սովորելու հնարավորությունից և օթևան չունեն։

Այս ամենը ավելի է բորբոքում մեր ատելությունը պատերազմի հրձիգների նկատմամբ։ Մենք հպարտանում ենք, որ Սովետական Միության պատանի քաղաքացիներ ենք։

Մեզանից շատերն արդեն անցել են Լենինյան-Ստալինյան կոմերիտմիության շարքերը։ Մինչև տարվա վերջը բոլորս կոմերիտական կդառնանք և մեր կարմիր վզկապները պատվով կնվիրենք մեզ փոխարինող ջոկատին։

Մենք հաջորդ դասարան կփոխադրվենք միայն 4 և 5 գնահատականներով։

## ՋՈԿԱՏԱՎԱՐԻ ՄԱՍԻՆ

*Ընկեր Գր. Հարությունյանի անվան ջոկատի ջոկատավար Ռիմա Նիկողոսյանը սովորում է 10-րդ դասարանում, միշտ եղել է ուսման գերազանցիկ։*

*Նա մեծ կենսագրություն չունի։ Ծնվել է 1934 թվին, կոմերիտական է՝ 1947 թվից, եղել է ջոկատի, դրուժինայի խորհրդի նախագահ, կոմսոմոլի կոմիտեի քարտուղարի տեղակալ և չորս տարի է, ինչ ջոկատավար է։*

*Նա սիրում է պիոներական աշխատանքը, սիրում է իր պիոներներին և կարողանում է ուսումնական և պիոներական աշխատանքները լավ կազմակերպել։*

*Ընկեր Գր. Հարությունյանի անվան ջոկատի լավագույն աշխատանքի օրինակին պետք է հետևեն մյուս ջոկատները։*

*Լավ աշխատողների գաղտնիքը պարզ է։ Դաստիարակն ու ջոկատավարը համատեղ և նվիրված են աշխատում։ Նրանց օգնում են մյուս ուսուցիչները. իսկ կոմերիտական կազմակերպությունը լավ է ղեկավարում ջոկատը։*




*ՀԱՄՈ ՍԱՀՅԱՆ*

*Նկ. Պ. ՄԱԼԱՅԱՆԻ*

Զարթնում է ահա մայր բնությունը,
Հալվում է ձյունը դաշտերի վրա:
Նորից բացվում է զվարթ գարունը,
Աշխարհն է շնչում բուրմունքը նրա:
Աչքը բացում է առաջին ծիլը
Մեր հայրենական հերկերի վրա.
Շուտով գալու է մեր արագիլը,
Կյանքն է լցվելու հին բույնը նրա:
Սառցե զրահն է փշրում առվակը
Եվ կարկաչում է իմ ճամփի վրա:

Շուտով գալու է մեր ծիծեռնակը,
Գնամ, նորոգեմ հին բույնը նրա:
Նկուղ եմ տարել ես իմ սահնակը,
Մինչ եկող ձմեռ թող այնտեղ մնա:
Շուտով գալու է սիրուն սարյակը,
Գնամ, նորոգեմ հին բույնը նրա:
Սկսենք ահա մեր մրցությունը...
Պայմանն եմ հայտնում ես ամեն մեկին,
Նա է մեզանից հենց լավագույնը,
Ով ամենից շատ բներ նորոգի:



## ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ԵՐԳ

*ՍՈՒՐԵՆ ՄՈՒՐԱԴՅԱՆ*

Այս գարնանը մեր փողոցում
Հիմքն է դրվում մի նոր շենքի,
Շուինդ, աղմուկ ու կառուցում
Եվ զարկերն են փոխվում երգի:

Մուրճի ամեն, ամեն զարկում
Խաղաղության շունչ կա ու երգ,
Որ հնչում է մեր քաղաքում
Ու տարածվում ամենուրեք:

# ՀԵՐՈՍ ԵՂԲԱՅՐԸ

Զ. ԴԱՐՅԱՆ

Նկ. Տ. ԹՈՔՄԱՃՅԱՆԻ

## 1.

Մի խումբ տղաներ դպրոցի բակում հավաքված սպասում էին ներկայացման սկսվելուն։ Գարնան տաք երեկո էր. նոր ծաղկած ծառերի վրա թռչուններն ուրախ համերգ էին տալիս։ Ծառերից պոկվում էին սպիտակ, կարմիր, նարնջագույն ծաղկաթերթիկները և թիթեռների պես օդում պտույտ գործելով իջնում էին լավ սրբված գետնին, ավազանի պատերին, տղաների թուխ գանգուրներին։ Բարձրահասակ, կապույտ աչքերով հինգերորդցի Բաբկենը ձեռքերն արագ թափահարելով ինչ որ կինոնկարից էր պատմում։ Նրան երբեմն ընդհատում էր Լևիկը, անհանգիստ, կճատ քթով մի տղա։ «Ի՞նչ ես ասում, Բաբկեն, պրոֆեսորն այդ ժամանակ դուրս չէր եկել... որսը մոռացա՞ր, որսը՞... իսկ որ բանտում Ինտերնացիոնալ են երգում...», ասում էր Լևիկն աչքերը խաղացնելով ու քիթը վեր քաշելով։ Մյուսները Բաբկենին ու Լևիկին սեղմված, աչքերը չռել լսում էին զարմանալի պատմությունը, տեղ-տեղ ուրախ բացագանչելով ու աղմկելով։ Նրանցից քիչ հեռու ավազանի պռնկին նըստել, շատրվանից ցայտող ջրերին էր նայում չորրորդ դասարանցի Զավեն Ծաղիկյանը։ Երևի նա իրենց Սևանա լիճն էր հիշում, որի ափին էլ հենց փռված է նրանց գյուղը։

Բաբկենը վերջին մասն էր պատմում, երբ դարբասը ճռնկալով բացվեց և գնդակի պես գլորվելով բակ ընկավ չաղլիկ, պեպենոտ դեմքով Աշոտը՝ չորրորդ Գ. դասարանից։ Նա ձեռքին բռնել թափահարում էր օրվա թերթը և ընկերներին հասնելով իսկույն ցույց տվեց.

— Եղբորս նկարն է, տեսնո՞ւմ եք ինչ լավ է դուրս եկել, ոնց որ կողքիդ կանգնած, մի տարում չորս տարվա նորմա է կատարել։ Այս էլ նրա մասին է գրված՝ «Անվանի վարպետը»։ Հիմի ամբողջ աշխարհը կկարդա ու կճանաչի...— ասում էր Աշոտը վրա-վրա տալով, ինչպես կարդում են առանց կետադրության նշանների։ Շտապելուց նրա այտերը կարմրել էին ու շունչը կտրվում էր։



Տղաները շրջապատեցին Աշոտին ու գլուխ-գլխի տվել նայում էին դազգահի մոտ կանգնած, ժպտացող աչքերով անվանի վարպետին։ Աշոտն էլի շատ բան ասաց եղբոր մասին, գովաբանեց նրանց գործարանն ու ցեխը, ապա ձայնը ցածրացնելով, համարյա շշնջալով հայտնեց, որ այժմ իր վարպետ եղբայրը աշխատում է մի մեծ գյուտի վրա։

— Պա՛հ,—հիացան տղաները։

— Լավ եղբայր ունես,—ասաց Բաբկենը։

— Նրա նման վարպետ չի ճարվի,—փքվեց Աշոտը,— ամեն տարի եղբայրս Մոսկվա է գնում։

Տղաներն ուրախ ծափ տվին։ Աշոտն ավելի ոգևորվեց։

— Ի՞նչ լավ է, որ մարդ անվանի եղբայր է ունենում, տղե՛րք,—ասաց նա ձեռքերն իրար շփելով,— ախր դուք չգիտեք, թե ինչքա՞ն լավ է...

— Ես գիտեմ,—մի փոքր նեղսրտած նրան ընդհատեց Լևիկը։

Ընկերները միանգամից շուռ եկան նրա կողմը։

— Իմ եղբայրը պակասը չի, նշանավոր արտիստ է ու Օլեգ Կոշևոյի դերն է խաղում... Ա՛յ, հենց այսօր էլ կտեսնես բեմի վրա,—ասաց Լևիկը աչքերն արագ թարթելով։

Ընկերներն աղմկելով վրա տվին։

— Ճի՞շտ ես ասում, Լևի՛կ, Օլեգ Կոշևոյի դե՞րը...

— Այո, հենց Օլեգ Կոշևոյի,—հաստատեց տղան,—մի տեսնենք ինչպե՞ս է խաղում... մայրիկս ամեն անգամ նրան բեմի վրա տեսնելիս լաց է լինում...

— Պա՜հ,—դարձյալ հիացան բոլորը։

— Դու էլ լավ եղբայր ունես,—խոստովանեց Աշոտը։

— Ես երկու եղբայր ունեմ,—ասաց Բաբկենը,—մեկը՝ մեքենավար ու մյուսը հաշվապահ։ Մեքենավար եղբայրս այնքան ճանապարհ է կտրել-անցել, որ երկու անգամ պտույտ կգործի երկրագնդի շուրջը։ Իսկ հաշվապահ եղբայրս պատվո գիր ստացավ...

— Լսե՞լ եք գյուղատնտես Հրանտ Բադալյանի մասին,—ընկերոջն ընդհատեց Ռուբիկը,— իմ եղբայրն է, Միչուրինի մոտ է սովորել...

— Իմ եղբորն ամբողջ քաղաքն է ճանաչում,—անհամբեր մեջ ընկավ Գևոն,—ճարտարապետ է, մեծ կամուրջ է կառուցել։ Բանակում հրամանատար է եղել ու չեխոսլովակյան շքանշան էլ ունի...



— Ի՜նչ լավ է,—ուրախացան տղաները։

— Ես եղբայր չունեմ,—հառաչեց չորրորդ դասարանցի շեկլիկ Արամը,—եթե ունենայի, նա անպայման հայտնի օդաչու կլիներ։ Այնքան բարձր կթռչեր իմ քաջ եղբայրը՜...—ու Արամը մատով ցույց տվեց երկրի հեռավոր կապույտը։

— Իսկ իմ եղբայրը՜...

## 2.

Այսպես էլի շատերը խոսեցին և դուրս եկավ, որ բոլորն էլ Աշոտի ու Լևիկի նման նշանավոր եղբայրներ ունեն։ Միայն Զավենն էր, որ չէր խառնվում խոսակցությանը։ Նրանց ընտանիքն այս տարի էր քաղաք փոխադրվել. հայրիկին առաջ էին քաշել քաղաքի հիմնարկներից մեկում աշխատելու։ Գյուղում մնացել էին Զավենի մեծ եղբայրն իր ընտանիքով և սիրելի Մարո տատը, որն այս քանի օրն անպայման քաղաք է գալու։ Զավենը չգիտեր՝ ինչ ասեր եղբոր մասին, որը իրենց կոլխոզում բրիգադավար էր. ոչ շքանշան էր ստացել և ոչ էլ նկարն էին թերթերում տպել։

— Իսկ դո՞ւ, Զավեն,—նրա թևից քաշելով ասաց Լևիկը,—ինչո՞ւ ես լռել. քո եղբոր մասին բան չունե՞ս ասելու։

— Հա՜, Զավենն է մնացել,—վրա տվին այս ու այն կողմից։

— Դե՛, երևի նրա եղբայրը որևէ բանով նշանավոր չի,—ծիծաղեց Աշոտը։

— Չէ, ի՞նչ ես ասում, էլ ի՞նչ եղբայր, որ նշանավոր չլինի,—զարմացավ շեկլիկ Արամը։

— Բան ասացիր...

— Թույլ տվեք, մի խանգարեք,— ձեռքերը թափահարելով ասում էր Բաբկենը։

Զավենն ավելի շփոթվեց. այտերն այրվում էին ու քիչ էր մնում լաց լինի։ Եվ լաց էլ կլիներ, եթե մի միտք չանցներ նրա գլխով։ Նա գլուխը բարձրացրեց և բարձր ձայնով ասաց.

— Իսկ իմ եղբայրը Սոցիալիստական Աշխատանքի Հերոս է... մեր շրջանում նրա նման բրիգադավար չկա... Նրա մշակած հողերը ծովի պես բերք են տալիս...

Ընկերներն այնպիսի մի աղմուկ-աղաղակ բարձրացրին, որ պատմել չի լինի։ Փաթաթվում էին Զավենին, քաշում նրա թևերից, ծափ էին տալիս։ Իսկ երբ մի փոքր հանդարտել էին, Բաբկենն ու Լևիկը խոստովանեցին, որ բոլորից նշանավորը Զավենի հերոս եղբայրն է...

Բայց հենց այդ աղմուկի մեջ էլ Զավենը ուշքի եկավ։ Քիչ էր մնում ճչա ու ասի՝ «Տղանե՛ր, սուտ եմ ասել, իմ եղբայրը ոչ մի հերոս էլ չի. ճիշտ է, անցյալ տարի ամենից շատ բերքը նա է հավաքել, բայց ոչ մի որոշում էլ չի եղել... Այդ բոլորը ես հնարեցի»... Երևի այդպես էլ ասեր, եթե դար-



բասի մոտ չերևար հրավիրված դերասաններով լիքը ավտոմեքենան։ Բոլորն աղմուկով նետվեցին դեպի դահլիճը, իսկ Ջավենն ընկճված ու տխուր տուն էր վերադառնում։

### 3.

Ճանապարհին Ջավենը որոշեց ամեն ինչ խոստովանել մայրիկին, ասել, որ ինքը շատ վատ բան արեց, խաբեց ընկերներին։ Հետո էլ նամակ կգրի եղբորը, ու նրան էլ ամեն ինչ կպատմի։ Նրան կասի, որ ինքը ուրիշ կերպ չէր կարող։ Ախր ինչո՞ւ բոլորը նշանավոր եղբայր ունենան, նրանցով հպարտանան, իսկ ինքը՝ չէ։ Իհարկե եղբայրն իրեն կհասկանա ու չի մեղադրի, ազնիվ խոսք... Այս մտքերի հետ էր, երբ իրենց բակի դռանը նկատեց եղբոր մոխրագույն «Մոսկվիչը»։

Տղան ուրախությունից իրեն կորցրեց։ Իսկույն մոռացավ դպրոցի բակում իր հետ պատահած անախորժությունը, մի քանի պտույտ գործեց սիրունիկ մեքենայի շուրջը՝ թմբկահարելով նրա կողերին, ապա աղմկելով նետվեց բակ ու վազ տվեց աստիճաններով։ Տունը լիքն էր ծանոթներով ու բարեկամներով, որոնք ուրախ զրուցում էին ու գոռգոռում։ Ջավենը նկատեց, որ մի քանիսն էլ գյուղից են եկել։ Մայրիկն ու հարևանի աղջիկ Մարուսյան ճաշասենյակում մեծ սեղան էին բաց արել ու շտապ պատրաստած ուտելիքներ էին դասավորում։ Եղբորը տեսնելով տղան ճչաց ու փաթաթվեց նրան։ Եղբայրը պինդ գրկեց Ջավենին և համբուրում էր նրա կարմրած, քրտնած այտերը։ Տղան անհանգիստ թպրտում էր եղբոր գրկում, հետո սկսեց շատախոսել, հարցնում էր սիրելի Մարո տատի մասին, երեխաների, արդեն ծերացած Չալիկ շան մասին։ Ու իսկի մտքովն էլ չէր անցկացնում հարցնել, թե ինչո՞ւ էին այսքան մարդ հավաքվել, երբ դեռ մայիսի մեկը շատ հեռու է։

Երբ Ջավենը մի փոքր հանգստացել էր, հայրիկը բռնեց նրա ձեռքից, մոտեցրեց իրեն, շոյեց թուխ գանգուրները և բաժակը վերցնելով ասաց.

— Ջավե՛ն ջան, հպարտացիր, հերոսի եղբայր ես, Գերագույն Սովետի Նախագահության Հրամանագրով Գևորգս Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի կոչում է ստացել... խմենք մեր հերոսի կենացը։



Բոլորը ծափ տվին ու բաժակները վերցրին, միայն Ջավենն էր, որ կարծես երազի մեջ լիներ, ոչինչ չէր հասկանում։ Նա աչքերը փակեց, ապա բաց արավ ու առաջին էլի տեսավ լիքը սեղանը, հայրիկին, եղբորը, լսեց սեղանակիցների ուրախ աղմուկը, բաժակների չխկչխկոցը ու հետո էլ՝

— Մեր հերոսի կենացը... Մեր հերոսի կենացը...

*— Ուրեմն չե՞մ հնարել, հայրի՛կ, չե՞մ հնարել...—հանկարծ բացագանչեց տղան այնպիսի մի ձայնով, որ բոլորը լռեցին,— ես այդպես էլ գիտեի, իմ եղբայրն անպայման հերոս պիտի դառնար, հերոս, ուռա՜,—ճչում էր Զավենը հարբածի նման օրորվելով ու պարելով։*

*Ապա հոր գրկից պոկվելով նա դուրս նետվեց ու շնչասպառ վազում էր դպրոց...*

*Այնտեղ հավաքվածներն, իհարկե, չէին հասկանում Զավենին ու ապշած նայում էին նրա ետևից, իսկ մենք, ընթերցող, արդեն ամեն ինչ հասկացանք և հենց այստեղ էլ վերջացնենք պատմությունը։*

---

# ԳԱՐՈՒՆ Է ԵԿԵԼ

*ՍԱՐՄԵՆ*

Գարուն է, գարուն,
Գետն է վարարուն,
Հնչում են երգեր
Դաշտում ու սարում:

Հավքերը հեռվից
Եկել են նորից,
Ծիլերը զվարթ
Ժպտում են հողից:

Եվ գիշեր ու զոր
Անթիվ տրակտոր
Հանդերն են հերկում
Խոփերով հզոր:

Ու դաշտապաշտպան
Անտառն անսահման
Ողջույն է տալիս
Ոսկեշող գարնան:

Բռնած սար ու քար,
Թփուտ ու անտառ,
Արածում են մեր
Հոտերն անհամար:

Արագածը ծեր՝
Զմրուխտ է դարձել,
Աչքն ուրախության
Արցունքով թացել:

Լուսաբեր Զանգուն
Իր երգն է երգում,
Անվերջ, անդադար
Մուրճերն են զնգում:

Երևանը, տե՛ս,
Զուգվել է այնպե՛ս,
Տուֆե պալատներ
Բացել են հանդես:

Զորս կողմ խնդություն,
Աչիկներ ժպտուն,
Գարունն է ծաղկել
Բոլորի սրտում:

Ու մեր շինարար
Երկիրը անծայր
Շողում է գարնան
Արևից պայծառ:

# ԱՄԵՐԻԿՅԱՆ ԲԱՐՔԵՐ

*Ա. ՄՈՎՍԻՍՅԱՆ*

*Մի քանի օր առաջ իմ ընկեր Սուրենն ինձ տվեց մի դիմում, որը նա վերցրել էր Հայկական ՍՍՌ Պետական կենտրոնական արխիվի № 16 գործից։ Դիմումը գրել էին Երևանի երրորդ մանկատան սաները 1921 թվականին և հասցեագրել ՀՍԽՀ Լուսժողկոմին։*

*Դիմումը կարդալուց հետո ես մի քանի րոպե տեղափոխվեցի մեր դառն ու մղձավանջային անցյալը...*

*Ամերիկյան որբանո՞ց... Հեշտ է ասել այս պարզ բառերը, բայց որքա՜ն բարդ է նրանց բովանդակությունը, որքա՜ն դառն էր ու ծանր որբանոցի կյանքը։ Երեսուն տարի է անցել այն օրից, բայց մենք մինչև հիմա չենք կարողանում ջնջել նրա հետքերը մեր սրտից, նրա մռայլ հուշերը՝ մեր հոգու խորքից։*

*Եվ ինչպե՞ս մոռանալ։*

*1920 թվականն էր։ Ամերիկացիները լավ սովորող մի խումբ որբերի դպրոցից հանեցին և ուղարկեցին անասուններ պահելու։ Երեխաները չէին ուզում գնալ։ Նրանք արտասվալի աչքերով աղերսում էին, որ չըտանեն իրենց, թողնեն մինչև դպրոցն ավարտելը։ Միստր Մարջերոմը տղաներին այսպես պատասխանեց.*

*— Ձեզ համար կրթությունը պետք է լինի այն, որ դուք սովորեք ազնիվ ծառայել. կրթությունից դուք ուրիշ սպասելիքներ չըպետք է ունենաք. դուք ավելի քիչ գրագետ պետք է լինեք և ավելի շատ ֆիզիկական սև աշխատանք կատարող։ Մենք ամերիկացիներս ձեր գլուխների կարիքը երբեք չենք զգացել, բայց ձեր ձեռքերն ու մեջքը միշտ էլ հարգել ենք։ Ահա, թե ինչու ենք ձեզ աշխատանքի ուղարկում։*

*1921 թվականի սկզբներին Լենինականի Պոլիգոնի վեց հազարից ավելի որբերին ընդհանուր կառավարիչ միսս Շեյնը պատժեց այն պատճառով միայն, որ նրանցից մի քանիսն իբր թե «անկարգներ են» ու «անհնազանդներ», որ կրոնական գրքերի փոխարեն երեխաները սկսել են կարդալ Մ. Նալբանդյանի, Հ. Հակոբյանի և Շ. Կուրղինյանի գրքերը։*

*Ամերիկացիների ականջին հասել էր նաև, թե որբերն ունեն կոմերիտական ընդհատակյա կազմակերպություն։ Ահա թե ինչու միսս Շեյնը կարգադրեց բոլոր որբերին ճաշից զրկել։ Ճաշի ժամանակ նրանց շարքի կանգնեցրին խոհանոցի առջևի մի ընդարձակ հրապարակում և ամբողջ ճաշը թափեցին գետնին։ Ապա բաց թողեցին մի քանի տասնյակ խոզեր, որ նրանք երեխաների աչքի առաջ ուտեն այդ ճաշը։*

*Ամերիկյան որբանոցների երեխաներին շատ հանրածանոթ էր միստր Օգդենը։ Նա երեխաներին տանջելու սարսափելի մասնագետ էր։*

*Միստր Օգդենն ստեղծել էր պատժի բոլոր ռաժան միջոցները, ամեն տեսակի մեքենաներ ու գործիքներ։ Նա ուներ և՛ բանտ, և՛ լրտեսություն։ Օգդենի գործակալներն ամեն օր մի քանի տասնյակ մեռնող որբերի մասին գրանցումներ չէին կատարում, իսկ թե ինչ են անում ու ինչ են ասում կենդանի մնացածները, ոչ մի բան անհետևանք չէր մնում։ Այդ դահիճը բանտարկում էր որբերին, խմբերով դուրս շպրտում որբանոցներից, դպրոցից հանում և ուղարկում էր ախոռ։ Նկարչության և երաժշտության մեջ առաջադիմություն ցույց տվող երեխաներին խոզեր պահելու կամ դաշտում աշխատելու էր ուղարկում։*

*Օգդենի պատիժներից մեկն էլ այս էր։ Նա պատժվածին ամեն տեսակի ստորացուցիչ գործեր էր հանձնարարում։ Նա շրջում էր Պոլիգոնում և ուր մի կեղտոտ բան էր տեսնում, պատժվածին կարգադրում էր մաքրել առանց որևէ գործիքի՝ ձեռքերով։ Երբ նա գնում էր ճաշի, պատժվածը դռան առաջ պետք է սպասեր, մինչև նրա վերջացնելը։ Երբ նա գնում էր գրասենյակ, պատժվածին կանգնեցնում էր դռան առաջ. այսպես նա չարչարում էր երեխային։ Երեկոյան*

պատժվածին թողնում էր պահակի մոտ և խիստ կերպով կարգադրում, որ ոչ մի կտոր հաց չտան նրան։

Երբեմն տանջանքը շաբաթներ ու ամիսներ էր տևում ու երեխան չէր իմանում, թե իր հանցանքն ինչ է։

Մի անգամ Օգդենը կանչեց երկու որբի և կեղծ ժպիտը դեմքին կարգադրեց հետևյալը.

— Ահա՛, ես հողի վրա գծում եմ մի քառակուսի, դուք պետք է երկու մետր խորությամբ մի հոր փորեք։

Մյուս օրը, արևը դեռ չծագած, երկու որբը սկսեցին աշխատանքը և ամբողջ օրը, առանց հանգստի ու առանց մի կտոր հաց ուտելու, ամռան կիզիչ արևի տակ, աշխատեցին։ Իրիկնադեմին Օգդենը մոտեցավ նրանց և հայտնեց, որ ինքը սխալվել է և զուգարանի համար շատ անհարմար տեղ է ընտրել. ուստի անմիջապես պետք է լցնել հորը, իսկ վաղը մտածել նորը փորելու մասին։

Ոչ մի ստրկատեր այդքա՜ն անհոգի կերպով չի արհամարհել մարդկային աշխատանքը, որքան ամերիկյան բռնակալները և նրանց ներկայացուցիչ միստր Օգդենը։

Այժմ պարզ է, թե ինչու Երևանի III մանկատան երեխաները նամակ էին գրել լուսժողկոմին։ Այդ փոքրիկ նամակը հազարավոր մանուկների անկեղծ սրտերից բխած մի փաստաթուղթ է։ Ժամանակը կարող էր ջնջել այդ տողերն ու ամեն ինչ կկորչեր, կմոռացվեր, բայց քանի դեռ թեկուզ մի նախկին որբ կա կենդանի, ամերիկյան որբանոցի արհավիրքները չեն ջնջվելու մեր մտքից։ Այդ արհավիրքներից ազատվելու բուռն ձգտման մի փաստաթուղթ է այս նամակը։

## ՀՍԽՀ ԼՈՒՍԺՈՂԿՈՄԻՆ

## Դ Ի Մ Ո Ւ Մ

## 3–ՐԴ ՄԱՆԿԱՏԱՆ ԲՈԼՈՐ ՍԱՆԵՐԻ ԿՈՂՄԻՑ

Մեզ հասած տեղեկությունների համաձայն, պետական մանկատները հանձնվում են ամերիկացիներին, որոնք մտադիր են առաջին հերթին մեր մանկատունը վերցնել, որպես ամեն ինչով հարմար որբանոց։ Այս բանը մեզ վրա շատ է ազդում և մենք բոլորս միասին գալիս ենք ասելու, որ մենք չենք կարող տանել նրանց լուծը, նրանց վարվեցողության բոլոր ձևերը մեզ համար զզվելի են։

Մենք միշտ գոհ ենք եղել և կմնանք խորհրդային իշխանությունից, ինչքան էլ անբավարար լինի նրա մեզ տված սնունդը, մի բան գիտենալով, որ մեր պետությունը աղքատ է, բայց չենք ցանկանում ամերիկացի լինել։ Ինչքան էլ նրանք լավ պահեն, պետք չէ մեզ նրանց նյութականը, քանի որ նրանք հարստահարներ և բռնապետներ են։ Մեզանից շատերը նրանց որբերն են եղել և մեր կաշվի վրա զգացել նրանց ճնշումը...

... Մեր երրորդ մանկատունը պետական բոլոր մանկատների մեջ ամենաառաջինն է եղել թե իր կարգապահությամբ և թե վարվեցողության ազատ ձևերի մեջ, բավական է հիշել, որ միայն Հ.Կ.Ե.Մ. բջջի անդամ են երեսուն հոգի, պատանի կոմունիստների կազմակերպության անդամ 20 հոգի, մյուսները համակիրներ են։

Հասած լայն ազատ զարգացման, մեզ համար ավելի ծանր բան չկա, քան նորից ընկնել բռնապետության ճանկերը։

Եթե չհարգեք մեր դիմումը, ավելի լավ է մեզ դուրս հանեք մանկատնից, քան հանձնեք։

Ի դիմաց բոլոր ընկերների
(ստորագրել են 5 հոգի)։
1921 թվի նոյեմբերի 11-ին, Երևան։

Նոր ծնված Սովետական իշխանությունը չթողեց, որպեսզի այդ որբերը նորից ընկնեն ամերիկյան դահիճների ձեռքը, որոնց խնամքը նա վերցրեց իր վրա և այժմ նրանցից շատ-շատերը մեր հայրենիքի անվանի մարդիկ են՝ գիտնականներ, ինժեներներ, ուսուցիչներ, գյուղատնտեսության և արդյունաբերության առաջավորներ։

# ԴԱՌՆ ՀՈՒՇԵՐ

ԱՇԽԵՆ ԱՋՆԱՎՈՒՐՅԱՆ

Նկ. ՀՈՎՀ. ՇԱՎԱՐՇԻ



Ես դեռ փոքր էի, երբ զրկվեցի ծնողներից։ 1920 թվականին, ուրիշ շատ անապաստան երեխաների հետ, ինձ էլ որբանոց բերին։ Մենք շատ-շատ էինք, հազարներով։ Ամերկոմի որբանոցներում մեզ պահում էին կիսաքաղց, հագցնում էին կոշտ բյազից կարված շորեր, կոպիտ ու ծանր կոշիկներ, իսկ ամռանը բոբիկ էինք ման գալիս։ Մենք գիշերում էինք մեծ, շատ մեծ ննջարաններում, որոնցից յուրաքանչյուրում քնում էին 300—400 երեխա, օդը սարսափելի ծանր էր լինում, այնտեղ երբեք վառարան չէր վառվում։

Ես մի ընկերուհի ունեի։ Նրա անունը Պերճուհի էր։ Մենք միասին քնում էինք երկհարկանի մահճակալի վերին հարկում, իսկ ներքևում՝ Մանուշն ու Արուսը։ Նրանք շատ խելոք երեխաներ էին։ Երեկոներն ընթրիքից հետո, երբ ննջարան էինք բարձրանում, նրանք մտնում էին անկողին, փաթաթվում գորշ, իրենց նման գունատ ադյալների մեջ, կպչում էին միմյանց, որպեսզի տաքանան ու քնում էին։

Ես ու Պերճուհին երբեմն մինչև ուշ գիշեր շշնջում էինք իրար ականջի, պատմում էինք անցյալից, մեր սիրելի ծնողների մասին, որոնք զոհ գնացին թուրքական ջարդերին, հիշում էինք մեր մյուս հարազատներին ու այդպես քաղցը զրուցելով քնում։

Այդպես էին անում նաև մյուսները։ Մեր բոլորի կյանքն այնքան նման էր միմյանց։

Մի գիշեր մեր մահճակալն ուժեղ ցնցվեց։ Մենք վախեցած վեր թռանք, նստեցինք տեղի մեջ ու ներքև նայեցինք։ Մանուշն ու Արուսը պինդ գրկախառնված անվերջ համբուրում էին միմյանց։

— Ի՞նչ է պատահել,—հարցրի ես։

— Մենք իրար գտանք։

— Ի՞նչպես թե իրար գտաք,— ասաց Պերճուհին։

— Մանուշը մորաքրոջս աղջիկն է։

— Այդ ի՞նչպես իմացաք։

— Անցյալից, գաղթի մասին պատ-

մելիս հասկացանք, որ մորաքրոջ աղջիկներ ենք։

— Հիմար ենք, հիմար, միմյանց անուն էլ էինք տալիս ու էլի գլխի չէինք ընկնում, որ բարեկամներ ենք։

— Ով գիտե ուր են մյուսները, գուցե կենդանի են, գուցե և միայն երկուսս ենք մնացել։

Զարթնել և աղմկում էին նաև հարևան մահճակալների երեխաները։ Նորությունն արագ տարածվեց ննջարանում։ Ամբողջ գիշերը քնել չկարողացանք։

Զախորդ օրերը ձմռան նման կուգան ու կերթան,
Վհատելու չէ, վերջ կունենան, կուգան ու կերթան…

Մեղմ երգում էր Վարդուհին։ Նա հիանալի ձայն ուներ։ Մենք հաճույքով էինք նրան լսում։ Մի օր պատահմամբ լուսամուտի մոտով անցնելիս նրա երգը լսեց ու հավանեց միսս Մական։ Նա Վարդուհուն իր աղախինը դարձրեց։ Դրանից հետո նա երգում էր միայն միսս Մակային զվարճացնելու համար։ Վարդուհին փոքրիկ եղբայր ուներ որբանոցում։ Նրան թույլ չէին տալիս որբանոց մտնելու, եղբորը տեսության գնալու։

Վարդուհին զրկվել էր ազատությունից, իսկ հետագայում զրկվեց նաև եղբորից։ Միսս Մական նրան Ամերիկա տարավ։ Աղջիկը չէր ուզում գնալ, խնդրում էր իրեն չտանել հեռու երկիր, թողնել իր հայրենիքում, միակ եղբոր մոտ, բայց նրան ոչ ոք չլսեց։

Դասերից հետո ուղիղ ճաշարան էինք գնում։ Հետճաշյա դպրոցականները, որոնք առաջին հերթին էին ճաշում մեզ ասացին, որ լոբով ճաշ է։

— Էլի լոբի է,—դժգոհեցինք մենք։

— Լոբի չէ, զազա է*),—ասաց Պերճիկը և բարձր ծիծաղեց։—Հացը, որ մի քիչ շատ լինի, ես այդ դառնահամ լոբին երբեք չեմ ուտի։

— Ինչ որ տալիս են պետք է ուտել, առանց այն էլ քաղցած ենք մնում։ Հիշո՞ւմ եք այն օրը ինչ ասաց մեզ քաղաքից եկած, կարմիր աստղը գլխարկին էն լավ քեռին. «բաժիններդ միշտ կերեք, որ շատ չհյուծվեք»…

— Նրան պետք է լսել։ Անցյալ օրն էլ որ եկել էր, մազերս շոյեց ու ես այնպես լավ զգացի, մի րոպե ինձ թվաց, թե հայրիկս էր եկել…

Մի ժպիտ խաղաց բոլորիս դեմքին։

Մտանք ճաշարան։ Սեղանների ձևով մեխված, մերկ տախտակների վրա շարված էին թիթեղյա փոքրիկ պնակները։ Ճաշարանում լռություն էր տիրում։ Ամերիկուհին՝ միսս Բասն այնտեղ էր։ Ձեռքերը մեջքին կանթած, կանաչավուն աչքերն այս ու այն կողմ պտտեցնելով, ճաշարանի երկարությամբ քայլում էր նա։

— Լոբին որդնած է—լսվեց Սաթիկի ձայնը։

— Սուս, ամերիկուհին,—շշնջացինք մենք։

Միսս Բասը ձայնի կողմն շտապեց։

— Ո՞վ էր,—ճչաց նա։ Սաթիկը մոմի նման սփրթնած կանգնեց։

—Լոբին որդնած է, հա՛,—կրկնեց ամերիկուհին և հարվածներն իջան

*) Մանր, սպիտակ լոբի։

անպաշտպան երեխայի գլխին, ուսերին, մեջքին...

Մենք ձեռքերով ծածկել էինք երեսներս, որ չտեսնենք մեր ընկերուհու տանջանքները։ Միսս Բասին օգնության եկավ պահեստապետ չոփուռ Մելիքը։ Նրանք երկուսով Սաթիկին դուրս քաշեցին նստարանների արանքից և կանգնեցրին ճաշարանի կենտրոնում, որպեսզի բոլորս նրան տեսնենք։ Սաթիկը կավի գույն էր ստացել և թպրտում էր չոփուռ Մելիքի ուժեղ բազուկների մեջ։ Միսս Բասը կտրեց նրա երկար ու ճոխ հյուսերից մեկը։

— Հեռացի՛ր, ըմբոստ աղջիկ,— գոռաց նա։

Առանց լացի, կամաց, թաթերի վրա քայլելով իր տեղը վերադարձավ Սաթիկը։ Հացը կուլ չէր գնում։ Բաժիններս լրիվ չկերած դուրս եկանք ճաշարանից։

— Սաթիկ ջա՛ն, ոչինչ, լաց չլինես,— մխիթարում էինք մենք։

— Հիշիր քաղաքից եկած հորեղբոր ասածները՝ «Կմեծանաք, կազատվեք նեղությունից, տանջանքներից...» Միայն շուտ անցնեին այս օրերը, շուտ մեծանայինք,— մտածում էինք մենք։





## ԲԱՐԻ ԳԱԼՈՒՍՏ, ԹՌՉՈՒՆՆԵՐ

ՎԻԿՏՈՐ ՎԱՐԴԱՆՅԱՆ

Նկ. Լ. ԽԱՆԱՄԻՐՅԱՆԻ

Բարի գալուստ, թռչուննե՛ր,
Բարեկամներ թևավոր,
Կրկին եկաք հողը մեր
Երկրներից հեռավոր:

Դուք կտրել եք ու անցել
Գետեր, լճեր կապուտակ,
Ձեր թևերն եք լայն բացել
Իմ հայրենի երկնի տակ:

Ձեր բներն եք դուք հյուսում
Դալա՛ր, դալա՛ր ճյուղերից,
Միջատներ եք դուք որսում
Մեր ցանքերից, ծառերից:

Կպաշտպանենք ձեր սիրած
Ձագուկներին անհամար,
Որ հրաշք էլ թև առած
Ձեզ պես երգեն, ծլվլան:

# ԱՌԱՋԱՎՈՐՆԵՐԻ ՕՐԻՆԱԿՈՎ

Նկ. Ան. Զորպաջյանի

*Վերջացավ ուսումնական տարվա երրորդ քառորդը։ Պիոներական շատ օղակներ ու ջոկատներ վերջին քառորդը դիմավորեցին առանց երկուսների։ Երևանի № 28 դըպրոցի Ստալինի անվան ջոկատի, Իսահակյանի անվան դպրոցի Գր. Հարությունյանի անվան ջոկատի ոչ մի պիոներ «երկուս» չունի։ Քիչ չեն այն ջոկատները, որոնք այժմ ամեն կերպ ձգտում են վերացնել նաև «երեք» գնահատականը։*

*— Միմիայն «չորս» և «հինգ».—այս է հազարավոր պիոներների նշանաբանը։*

*—Բա՛րձր պահել ջոկատի և դպրոցի պատիվը, սովորել միայն լավ և գերազանց.—այսպես են սկսում չորրորդ քառորդը հազարավոր աշակերտներ։*

*Մինչև տարեվերջի քննությունները քիչ ժամանակ է մնացել։ Այժմ բոլոր օղակների ու ջոկատների առաջին խնդիրն է՝ չունենալ ո՛չ մի երկտարեցի, վերաքննություն ունեցող ո՛չ մի պիոներ։*

*Մեր ամսագրի այս համարում տպագրվող նամակները ցույց են տալիս, թե պիոներներն ինչպիսի՜ եռանդով են պատրաստվում քննություններին, ինչպես են պայքարում նրանք օղակի, ջոկատի, դրուժինայի, դպրոցի առաջնության, պատվի համար։*

## Առանց երկուսի

Դասերից հետո մեր օղակի պիոներները տուն չգնացին։ Հռիփսիկն այդ օրը թվաբանությունից «երկու» գնահատական էր ստացել։ Այսպիսի դեպք մեր օղակում առաջին անգամ պատահեց։ Բոլորից շատ վրդովվել էր Սվետլանան։ Նա չէր կարողանում հասկանալ, թե ինչու Հռիփսիկը «երկու» ստացավ։ Չէ՞ որ հենց երեկ նրանք դասերը պատրաստեցին իրար հետ։

— Այդպե՞ս ես խոստումը կատարում,— փոքր ինչ հանդիմանելով ասաց Լաուրան։

— Չի կարելի այս ձևով խոսել ընկերուհու հետ,—ասաց Սվետլանան։—Նա հիմա կպատմի մեզ, թե ինչու չկարողացավ թվաբանության խնդիրը լուծել։

Հռիփսիկը լուռ էր, նա չգիտեր ինչ պատասխանել։ Պարզվեց, որ Հռիփսիկը խնդիրն առանց հասկանալու արտագրել էր Սվետլանայի տետրից։

— Ո՞վ է ուզում Հռիփսիկի հետ պարապել,— ասաց Սաթիկը պիոներներին։

— Ե՛ս, ե՛ս,—դիմեցին պիոներները այս ու այն կողմից։

— Լա՛վ, Լաուրա, դու պարապիր Հռիփսիկի հետ,— ասաց Սվետլանան։

Լաուրան մոտեցավ Հռիփսիկին։ Նրանք մեղմ ժպտացին։ Պիոներներն ուրախ վերադարձան տուն։

Երևանի № 28 դպրոցի 5 Գ. դասարանի աշակերտուհիներ՝ Լաուրա Վարդանյանը և Հռիփսիկ Ղարիբջանյանը օգնում են Հռիփսիկ Օհանյանին լավ յուրացնելու թվաբանությունը։

Ամեն օր Լաուրան ու Հոփփսիկը դասերից հետո պարապում էին իրար հետ: Լաուրան գրատախտակի վրա լուծում էր թվաբանության խնդիրներն ու վարժությունները: Բացատրում էր տասնորդական կոտորակների կանոնները: Անցան օրեր: Հոփփսիկը ոչ միայն ուղղեց իր «երկուսը», այլև ստացավ «չորս»:

Հիմա մեր օղակում «երկու» գնահատական ստացող չկա: Մենք այժմ պատրաստվում ենք քննություններին: Օղակը որոշել է քննությունները հանձնել «չորս» և «հինգ» գնահատականներով:

*ԻՐԱ ԱՎԵՏԻՍՅԱՆ*

(28-րդ դպրոցի 9-րդ ջոկատի 2-րդ օղակի օղակավար)




Մոտենում են տարեվերջի քննությունների օրերը: Մեր դասարանը լավ է հասկանում, թե ինչ է պահանջվում իրենից և ամեն մի աշակերտ ձգտում է ավելի լավ հանձնել քննությունները: Դրա համար մենք արդեն սկսել ենք կրկնել անցած դասերը: Պիոներներից՝ շատերը օրինակելի ձևով են կազմակերպում այդ աշխատանքը: Ես ուզում եմ պատմել, թե ինչպես եմ նախապատրաստվում քննություններին:

Երբ դասերը վերջանում են, ես առանց ժամանակ կորցնելու վերադառնում եմ տուն: Տանը ես ունեմ մի փոքրիկ անկյուն: Այնտեղ դասավորված են իմ գրքերն ու տետրակները: Պատին փակցված է օրվա ռեժիմը: Հանգստանալուց հետո սկսում եմ պատրաստել հաջորդ օրվա դասերը: Դասագրքից բացի կարդում եմ գեղարվեստական և հանրամատչելի գիտական գրքեր: Դա շատ է օգնում ինձ՝ դասերս ավելի լավ հասկանալու համար: Դրանից հետո ես կրկնում եմ տարվա ընթացքում անցածը, վերհիշում հայերեն և ռուսերեն բանաստեղծությունները, անհասկանալի բառերը արտագրում փոքրիկ բառատետրում: Այդ բառերի բացատրության համար դիմում եմ իմ ուսուցիչներին: Ես տանը ունեմ նաև թելադրության առանձին տետր: Ամեն օր մայրս թելադրում է որևէ գրվածք, իսկ ես գրում եմ այդ տետրում: Դրանով նա օգնում է ինձ: Հիմա արդեն կարողանում եմ անսխալ գրել: Նույն ձևով ես կրկնում եմ մյուս առարկաները: Պատահում



№ 57 դպրոցի 7-րդ դասարանի աշակերտ Լենմիր Բաղդասարյանը կրկնում է բնագիտությունից անցածը:

է, որ դժվարանում եմ հասկանալ անցած դասը: Այսպիսի դեպքում դիմում եմ ուսուցիչներին կամ ընկերներիս: Նրանք մեծ սիրով օգնում են ինձ:

Ես հենց հիմա էլ պատրաստ եմ քննություններին: Կարող եմ վստահ ու համարձակ մոտենալ քննական սեղանին:

*ԼԵՆՄԻՐ ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆ*

(57-րդ դպրոցի 7-րդ դասարանի աշակերտ)



## Այսպես ենք աշխատում

Մեր ջոկատը հաջողությամբ փակեց ուսման երրորդ քառորդը:

— Այդ դեռ մեր հաջողության կեսն է,— ասաց ավագ ջոկատավար ընկեր Փանոսյանը:—Մեր ջոկատը միայն այն ժամանակ կարող ենք անվանակոչել, երբ բոլոր պիոներները շարունակեն լավ սովորել, լավ նախապատրաստվեն տարեվերջի քննություններին, և ուսումնական տարին փակեն բարձր ցուցանիշներով:

Անվանակոչման հարցը մեզ ավելի ոգևորեց:

Ջոկատի պատիվը բարձր պահելու համար մենք որոշեցինք երեքից ցածր գնահատական չունենալ:

Այժմ ամբողջ ջոկատն սկսել է անցած առարկաների կրկնությունը:

Ես հենց ուսումնական տարվա սկզբից ուշադիր եմ եղել դեպի դասերը: Ժամանակին կատարել եմ թե՛ տնային, և թե՛ դասարանական առաջադրանքները: Միշտ աշխատել եմ օրվա ռեժիմով: Այդ է պատճառը, որ այժմ կրկնությունները ինձ համար դժվար չեն: Քննություններն ավելի պատրաստ դիմավորելու համար կազմել եմ կրկնության պլան:



Երևանի № 67 դպրոցի 8-րդ ջոկատի պիոներները հետաքրքրությամբ լսում են նոր գրքի ընթերցումը: Կարդում է Հրաչիկ Խաժակյանը:

Ամեն օր, դասերը խնամքով պատրաստելուց հետո, անցնում եմ կրկնություններին: Արդեն կրկնել եմ հայոց լեզվից անցածը. անգիր գիտեմ քերականական կանոնները: Երբեմն մոռացած բարդ բառերը հիշելու համար դիմում եմ իմ կազմած բառարանի կամ հայոց լեզվի ուսուցչի օգնությանը: Տանը ինքնուրույն կերպով թվաբանական նոր խնդիրներ ու օրինակներ եմ լուծում: Ավելի շատ ուշադրություն եմ դարձնում ռուսաց լեզվի վրա:

Այսպես են աշխատում դասարանի բոլոր պիոներները:

Մենք պատրաստ ենք տարեվերջի քննություններին: Համոզված ենք, որ մեր ջոկատը կարժանանա անվանակոչման:

ԳՈՒԳԱՐՔ ՂԱԶԱՐՅԱՆ

(67-րդ դպրոցի 8-րդ ջոկատի պիոներ)




*Լ. ՀՈՎՍԵՓՅԱՆ*
(Հայկական ՍՍՌ Անտառային տնտեսության մինիստր)

*Նկ. Վ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ*

Ամեն օր դուք սեղանի առաջ նստած պատրաստում եք ձեր դասերը: Գիրք եք կարդում, տետրակներում գրում եք: Գեղեցիկ կահույքը զարդարում է ձեր սենյակը: Մտածե՞լ եք արդյոք, որ այս բոլորը տալիս է անտառը: Ծառերից են պատրաստում նաև դռները, լուսամուտները, հատակը, առաստաղը և բազմաթիվ այլ իրեր...

Շատ ու շատ տարիներ առաջ Հայաստանը ծածկված է եղել փարթամ անտառներով: Հաստաբուն կաղնիների, երկնաձիգ բարդիների, հաճարի ու թխկենու սաղարթի ներքո մարդիկ իրենց հյուղակներն են պատրաստել: Նրանք այդ գեղատեսիլ անտառներում որսացել են այծյամ, եղնիկ, արջ, վայրի խոզ և ուրիշ կենդանիներ: Անտառներն այնքան շատ էին, որ մարդիկ չէին մտածում նրանց պաշտպանելու մասին: Նրանք անխնա ոչնչացնում էին ծառերը:

Արագածի ստորոտում՝ Բյուրական գյուղում ապրում էր մի դաժան կալվածատեր: Պատմում են, թե ինչպես այդ խոշոր անտառատերը տասնյակ հեկտար անտառներ կտրատել է ածուխ պատրաստելու համար: Նա անտառները ցանկապատում էր և մարդիկ չէին կարողանում մոտենալ: Վրա էր հասնում ցուրտ ու երկարատև ձմեռը: Անպաշտպան գյուղացիները ոչ տաք հագուստ ունեին, ոչ էլ վառելիք: Նրանք ստիպված էին ծառերը թաքուն կտրել, որ վառեն ու տաքանան: Այդ էր պատճառը, որ Աշտարակի, Ապարանի, Ախտայի և ուրիշ շրջանների գեղեցիկ անտառներն այժմ չկան: Այնտեղի սարերն ու բլուրները մերկ են, ծառերից ու թփերից զուրկ:

Սովետական կարգերի հաստատումից հետո մարդիկ սկսեցին մտածել անտառների վերականգնման մասին: Նրանց շահագործումը կանոնավորելու, պաշտպանությունն ուժեղացնելու նպատակով նոր միջոցներ կիրառեցին: Դիլիջանի, Կիրովականի, Ստեփանավանի բնակիչները շրջակայքի նոսր անտառները խտացրին նոր ծառերով: Այդ վայրերի բնությունն ավելի գեղեցկացավ: Կառուցվեցին շատ սանատորիաներ: Դրանից հետո ամեն տարի տարբեր քաղաքներից մարդիկ են գալիս այստեղ հանգստանալու և բուժվելու համար: Բայց սա դեռ բոլորը չէ:

Հայաստանի անտառները գտնվում են լեռնալանջերի վրա: Դա հնարավորություն է տալիս հողը պաշտպանել հեղեղներից, կանոնավորել գետերի հոսանքը, ապահովել հիդրոէներգետիկ կառուցումների նորմալ աշխատանքը: Մեր մայրաքաղաքը նույնպես անտառապատվում է: Երևանի անտառները 800 հեկտար տարածություն են բռնում: Շուտով ամբողջ քաղաքն ու նրա արվարձանները կանաչազարդվելու են:

Արզնի և Ջերմուկ կուրորտների շրջակայքում անտառներ չկային: Բնությունն այս առողջարաններում չոր էր և անհրապույր: Բայց մեր կառավարությունը որոշեց անտառներով ծածկել այդ տեղերի լերկ սարերն ու դաշտերը: Հիմա մեր բնակչության համար խոշոր նշանակություն ունեցող այդ կուրորտները շրջապատված են անտառներով և պուրակներով:

Անտառի մշակման աշխատանքների մեջ հատուկ տեղ է գրավում անտառներում պտու-



ղատու ծառերի տարածման գործը: Այս սապարեզում մեր գիտնականներն օգտագործում են միչուրինյան մեթոդները:

Մեր ռեսպուբլիկայում տասնյակ հեկտարներ պտղատու այգիներ կան: Նրանք ստեղծվել են վայրի ծառատեսակները ազնիվ տեսակների վրա պատվաստելու միջոցով: Այդ անտառային այգիները հարյուրավոր տոննա հյութալի և համեղ պտուղ են մատակարարում աշխատավորներին: Այժմ մեր անտառներում կան նոր պտղատու ծառեր՝ կովկասյան խուրմա, շագանակ, ֆիստաշկա:

Բնության վերափոխման ստալինյան ծրագրով հիմա խոշոր աշխատանք է տարվում Սևանա լճի ջրերից ազատվող հողերի վրա անտառներ աճեցնելու համար: Այս տարի գարնանը Մարտունիում, Նոր Բայազետում, Սևանա լճի ափերին հազար հեկտար տարածության վրա տնկվելու են կաղնի, սոճի և ուրիշ ծառեր, որոնք տեխնիկական հատկություններ ունեն: Գեղատեսիլ Սևանն անտառապատվելով կդառնա մեր երկրի ամենալավ կուրորտներից մեկը:

Կանցնեն տարիներ և մեր գեղեցիկ երկիրը կծածկվի փարթամ անտառներով, սովերախիտ պուրակներով և բուրումնավետ այգիներով: Կոմունիզմ կառուցող մարդկանց համար այլևս սարսափելի չեն լինի ոչ խորշակները, ոչ հեղեղները և ոչ էլ երաշտը:



ԳՐՔԵՐԻ ԱՇԽԱՐՀՈՒՄ

# «ՓՈՔՐԻԿ ԱՐԱ, ԱԿԱՆՋ ԱՐԱ»

Բանաստեղծուհի Ս. Կապուտիկյանի այս գիրքը փոքրերի համար է: Բաց ենք անում նրա առաջին էջը և կարդում.

«Իմ լավ բալիկ,
Իմ Արայիկ
Թո՛ղ խաղերդ,
Նստիր մոտիկ,
Արի կարդանք
Այս գիրքը նոր,
Քեզ համար եմ
Բերել այսօր»...

Եվ ահա դրան հաջորդում են մեկը մյուսից հետաքրքիր բանաստեղծությունները: Գրքի երկրորդ բանաստեղծությունը նվիրված է մանուկների սիրելի բարեկամ մեծ Ստալինին: Այդ բանաստեղծության մեջ փոքրիկներն իրենց անսահման սերն են արտահայտում



մեր երջանիկ կյանքն ստեղծող մեծ առաջնորդի նրկատմամբ և խոստանում են սովորել գերազանց, սիրել աշխատանքը, դառնալ մեր Հայրենիքի արժանավոր քաղաքացիներ:

«Իմ մաման» բանաստեղծության մեջ փոքրիկ Արան խոսում է իր ստախանովական բանվորուհի մոր

մասին, որի անունը հայտնի է բոլորին: Նրա աշխատանքային հաջողությունների մասին խոսում է ռադիոն, գրում են թերթերը: Մի ուրիշ երեխա՝ Վանյան, ուսման ժամերից դուրս, օգնում է իր մայրիկին: Նա կամ ջուր է բերում, կամ փայտ է ջարդում, զբաղեցնում է իր փոքրիկ քրոջը, կարգի է բերում իր մանկական անկյունը («Մայրիկի օգնականը»):

Մեր երեխաները սիրում են հայրենի բնությունը, որի գրկում նրանք հանգստանում և կազդուրվում են: «Նամակ ճամբարից» բանաստեղծության մեջ նկարագրված է ճամբարային ուրախ ու երջանիկ առօրյան: Ճամբարում հանգստացող երեխաները շրջում են դաշտերում և անտառներում, ծաղիկներ են հավաքում, համարձակ ճամփորդություններ են կատարում: Գեղեցիկ է «Ես սիրում եմ մայիսը վառ» ոտանավորը: Բնությունն իր զարթոնքն է ապրում, ծաղկում են դաշտերն ու այգիները, գետերը խոխոջում են ձմռան քնից արթնացած և երեխան սիրում է մայիսը, որովհետև այդ ամսին Սովետական զորքերը հաղթանակով մտան Բեռլին՝ այնտեղ բարձրացրին հաղթանակի դրոշը: Գողտրիկ ու սահուն գրված բանաստեղծություն է «Թթենին»: «Իմ նոր քույրիկը» ոտանավորի մեջ ցույց է տրված սովետական երեխայի ջերմ ընկերական վերաբերմունքը արտասահմանյան մռայլ իրականությունից Սովետական հայրենիք վերադարձած ընկերուհու նկատմամբ: Մարինան արտասահմանում դժբախտ և անուրախ է եղել: Նա այնտեղ չի գնացել մանկապարտեզ, դպրոց, նրա հորը գործ չեն տվել. իսկ այստեղ Մարինան դպրոցում սովորելու և ընկերական ջերմ մթնոլորտում լինելու հնարավորություն է ստացել: Մի այլ բանաստեղծության մեջ, որը կոչվում է «Ես, Օլեգը և Ալին», Սիլվա Կապուտիկյանը ցույց է տվել մեր հայրենիքի տարբեր ազգությունների եղբայրական դաշինքն ու սերը: Երեք երեխա՝ հայ, ռուս և ադրբեջանցի ապրում են միևնույն թաղում: Նրանք թե՛ խաղի ժամին, թե՛ աշխատանքի և ուսման մեջ միմյանց օգնում են, ուշադիր և անկեղծ ընկերներ են:

Ս. Կապուտիկյանի բանաստեղծությունները գրված են մաքուր և սահուն լեզվով: Նրանք սեղմ ու կոնկրետ են: Այդ գրքույկը պիտի կարդան և՛ պիոներները, և՛ փոքրերը:

*Հ. ՇԻՐԱԶՅԱՆ*

# ՈՒՐԱԽ ԺԱՄԱՆՑ

## ԳՏԻՐ ՂԵԿԱՎԱՐԻՆ

*ՎԱՐԴԱՆ ՎԱՐԴԱՆՅԱՆ*

*Նկ. Ռ. ՏԵՐ-ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆԻ*



*Այս խաղը կարելի է խաղալ պիոներական ջոկատներում, օղակներում, մեծ ու փոքր խմբերով:*

*Կազմում ենք կիսաշրջան: Խաղացողներից մեկին ուղարկում ենք սենյակից դուրս: Նրա գնալուց հետո ձեզանից մեկին ընտրում ենք խաղի ղեկավար: Խաղի ղեկավարը պետք է լինի ստեղծագործող, որովհետև խաղի հետաքրքրությունը կախված է ղեկավարի հնարագետ և ճարպիկ շարժումներից:*

*Ղեկավար ընտրելուց հետո, դուրս ուղարկվածին ներս ենք կանչում, ապա բոլորդ միասին սկսում ենք ծափ տալ և աչքի տակով հետևել խաղի ղեկավարին: Ղեկավարը աշխատում է զգուշորեն շուտ-շուտ փոխել ծափ տալու շարժումը մի այլ շարժումով, այնպես, որ դրսից եկածը չնկատի: Դուք անմիջապես ընդօրինակում եք տվյալ շարժումը և այսպես արագ-արագ փոխվում են շարժումները: Այդ ժամանակ դրսից եկողը կանգնում է շրջանից երկու քայլ հեռու, ուշադրությամբ դիտում խաղացողներին, աշխատելով գտնել, թե ով է շարժումներ փոխողը, այսինքն ղեկավարը: Գտնելու դեպքում, միանում է խաղացողներին: Այնուհետև մեկ ուրիշին ենք ուղարկում դուրս և նոր ղեկավար ենք ընտրում ու այսպես շարունակում խաղը սկզբի ձևով:*

*Ճարպիկ և հնարագետ ղեկավարը ոչ միայն խաղը հետաքրքրական է դարձնում, այլ և ուշ է հայտնաբերվում: Այս խաղը զարգացնում է ուշադրությունը և դիտողականությունը:*

*Ջոկատի հավաքույթից հետո ջոկատավարը առաջադրեց այս խնդիրները.*

*— Մեկ ու կես հավը մեկ ու կես օրում ածում է մեկ ու կես ձու. երկու սպիտակ հավը երկու օրում քանի՞ ձու կածեն:*

*— Գտեք մի թիվ, որը եթե բաժանենք 2, 3, 4, 5 և 6 թվերի վրա, ստանանք 1-ական մնացորդ. իսկ 7-ի վրա բաժանելիս մնացորդ չստացվի:*

*— Սեղանի վրա դրված է հում ձվերով լիքը մի աման: Չորս պիոներ հերթով պետք է մոտենան սեղանին և վերցնեն ամանի մեջ եղած ձվերի կեսը և կես ձու:*

*Պիոներներից Տիգրանը բողոքեց.*

*— Ինչպե՞ս կարելի է ձուն կիսել, չէ՞ որ նա կթափվի:*

*Ջոկատավարը պատասխանեց.*

*— Չի՛ թափվի:*

*Պիոներները հերթով մոտեցան և կատարեցին ջոկատավարի առաջադրանքը: Չորրորդ պիոները, որ վերջինը մոտեցավ սեղանին, ամանից վերցրեց մեկ ձու:*

*Գտեք, թե ամանի մեջ քանի՞ ձու կար և պիոներներից ամեն մեկը քանի ձու վերցրեց:*

---

# «ԿԱՅԾԱԿԻ ՓՈՔՐԻԿ ՔՈՒՅՐԸ»

*Ա. ԵՐԵՄԻՑԿԻ*

Բանվորը սեղմում է կոճակը և փոքրիկ դազգահի մեջ վառ կերպով բոցկլտում են էլեկտրական կայծերը: Այս կայծերը և՛ բնակարանի զանգի, և՛ էլեկտրական մոտորի թշնամիներն են: Ամենափոքր կայծն անգամ հալեցնում է ամենակարծր մետաղից պատրաստած միացուցիչը: Բայց կոճակը սեղմող բանվորն ինչո՞ւ է այդպես հանգիստ: Չէ՞ որ դազգահը կարող է շարքից դուրս գալ:

Բանվորը դրանից չի էլ վախենում: Դազգահի միջի կայծն «ընտելացված» է: Ստալինյան մրցանակի լաուրեատներ՝ Բ. և Ն. Լազարենկոները ստիպել են նրան իր ուժով ոչ թե քայքայել, այլ մշակել մետաղները:

Վաղուց հայտնի է, որ գայլիկոնը կամ հատիչը պատրաստում են ավելի կարծր մետաղից, քան թե մշակվողն է: Իսկ այս զարմանալի դազգահում հատիչների ու գայլիկոնների տեղը բռնում է բարակ մետաղալարը: Այնուամենայնիվ մետաղալարը պինդ ձուլվածքի միջով այնպես հեշտ է անցնում, կարծես թե նրա առաջ դյուրահալ մոմ է գտնվում:

Իսկ ի՞նչպես է աշխատում դազգահը:

Մետաղալարի միջով բաց են թողնում ընդհատվող էլեկտրական հոսանք, որը մեկ վայրկյանում հազարից ավելի պարպում է տալիս: Ամեն մի պարպումը՝ փոքրիկ կայծակ է: «Կայծակը» մուրճի նման խփում է մետաղին, բայց այս էլեկտրական դարբնի մուրճը յուրահատուկ մուրճ է: Դա մետաղի այն մասերն են, որ էլեկտրական լարվածությունը պոկում է մետաղալարից: Մետաղի այդ մասնիկները փոքր են, բայց նրանք այնպես հաճախակի են հարվածում, որ կտրում անցնում են ամենակարծր ձուլվածքի շերտը: Մետաղալարի փոխարեն կարելի է վերցնել մի ուրիշ ձևի առարկա և մետաղի մեջ բացված անցքը նույնպիսի ձև կունենա:

Նոր դազգահների աշխատանքը հաշվում են ոչ թե շրջապտույտների, այլ մեկ վայրկյանում եղած էլեկտրական պարպումների քանակով:

Բայց ահա թե ինչպես են աշխատում Ստալինյան մրցանակի լաուրեատ ինժեներ Գուսևի պատրաստած դազգահները:

Բարակ և թույլ թիթեղյա շրջանակը ամրացված է այդ դազգահների լիսեռի վրա: Շրջանակը արագ շարժումով կտրում ու մտնում է ամենակարծր ձուլվածքի մեջ: Կարծես ոչ թե մետաղ է նրա դեմ, այլ փայտ: Թիթեղը պողպատ է կտրում: Դժվար է դրան հավատալ:

Բայց ուշադիր նայեցեք, թե ինչպես է

աշխատում դազգահը։ Թիթեղյա շրջանակի և կտրվող մետաղի միջև ուժեղ էլեկտրական կայծեր են առաջանում։ Այդ միայն թվում է, թե թիթեղն է կտրում մետաղը։ Մինչդեռ մետաղին քայքայողը կայծերն են։

Լազարենկոների և Գուսևի դազգահներն այժմ արդեն տասնյակ անգամ արագացրել են դետալների վերամշակումը։

Գիտնականները կայծն անվանում են «կայծակի փոքրիկ քույր»։ Սովետական մարդն «ընտելացված կայծակը» օգտագործում է մետաղը իրեն ենթակելու համար։

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապկի առաջին էջում՝ «ՊԱՏՐԱՍՏՎՈՒՄ ԵՆ ՔՆՆՈՒԹՅՈՒՆՆԵՐԻՆ»

Գործ նկ. Ս. ՍՏԵՓԱՆՅԱՆԻ


„ПИОНЕР“

№ 4

ЖУРНАЛ ДЛЯ ПИОНЕРОВ И ШКОЛЬНИКОВ

Орган ЦК ЛКСМ Армении

Год издания 23-ий, апрель, 1951 г. Ереван





Հասցեն՝ Երևան, Մարքսի փողոց № 21, հեռախոսներ՝ 2—44—83, 2—59—06

ՎՖ 01083, Պատվեր 205. Տիրաժ 5000. Տպագրական 2¼ մամուլ. հեղինակային 2 մամուլ. 1 մամուլում 45.200 տպ. նիշ։ Արտադրության է հանձնված 15/III—51 թ.։ Ստորագրված է տպագրության 10/IV—51 թ.։

Հայպոլիգրաֆհրատվարչության № 1 տպարան, Երևան, Ալավերդյան փ. № 65, 1951 թ.։

# ՄԱՅԻՍ

Խոսք՝ ՍԱՐՄԵՆԻ

Երաժշտություն՝ Ա. ՄԱՆՈՒԿՅԱՆԻ

Քայլերգանման

Մա — յիս է, մա — յիս, Ինչ
պայ — ծառ ա - միս, կար - միր վար — դե
— րով զուգ - վել է այ — գիս: Գե —
— տե — րի չա — ռաչ, Աղ — բյու — րի կար
կաչ, Ծը — փում են ան — վերջ դաշ —
— տե — րը կա — նաչ: Գե — տե — րի չա —
— ռաչ, Աղ - բյու — րի կար - կաչ, Ծը —
— փում — են ան — վերջ, դաշ- տե — րը կա — նաչ:

Անցնում են չարճեր,
Հրճչում են երգեր,
Մեր ազատ ճողում
Գարուն է եկել.

Տոն է խնդության,
Մեր մեծ ճաղթության.
Թըմբուկները մեր
Թող ուրախ թընդան: